ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ

## Դասախօսութիւններու շարք

Հրատարակութեան պատրաստեց՝

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԶ.

ԳԱՀԻՐԷ
2019

ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ

## Դասախօսութիւններու շարք

Հրատարակութեան պատրաստեց՝
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԶ.

ԳԱՀԻՐԷ
2019

## *ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ*

Մեծանուն պատմաբան Արշակ Ալպօյաճեանի (1879, Կ. Պոլիս – 1962, Գահիրէ) մահէն ետք, Յովհաննէս Տէր Պետրոսեան նամակ մը (անթուակիր) կը յղէ Ալպօյաճեանի Կտակակատար Յանձնախումբի անդամներուն, ուր կը կարդանք.

... [Վ]*երջին քանի մը տարիներուն, հանգուցեալին հետ կ՚աշխատակցէի «Ղեւոնդ պատմագիր»ի եւ «Հայ ազատագրական շարժում»ի ուսումնասիրութիւններու վրայ, եւ սակայն դժբախտաբար վարպետին մահը շուտ վրայ հասաւ եւ այդ աշխատութիւնները ուրիշ կարգ մը ուսումնասիրութիւններու նման մնացին անաւարտ:*

*Տխուր այս պայմաններու տակ թէեւ հոգիս բեկենակ է, սակայն աշխատելու եռանդը դեռ կը մնայ վառ եւ այսօր պարտականութիւն կը սեպեմ ինքզինքիս այդ աշխատութիւններու շարունակութիւնը կատարել առանձին...:*

(Տե՛ս Տիգրան Գէորգեան, «Արշակ Ալպօյաճեանի գիտական արխիւր համալրող նորայայտ նիւթեր», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 27 Յունիս 1977, 63-րդ տարի, թիւ 17.720, էջ 2:)

Տէր Պետրոսեանի տեղեկութիւնը կը հաստատէ հայ ազատագրական շարժումի պատմութեան նուիրուած դասախօսութիւններու շարքը, զոր 1960-1961-ին Ալպօյաճեան կարդացած է Հ.Բ.Ը.Մ.-ի Գահիրէի գրասենեակին մէջ: Դասախօսութիւնները կազմակերպուած էին Գահիրէի Հ.Բ.Ը.Միութեան Երիտասարդաց Մշակութային Մարմինին կողմէ:

Համաձայն *Արեւ* օրաթերթի յայտարարութիւններուն, անոնք ունեցած են հետեւեալ յաջորդականութիւնը.

Ա. Ուրբաթ, 7 Հոկտեմբեր 1960:
«Հայկական ազատագրական շարժման սկզբնական քայլերը»:

Բ. Ուրբաթ, 14 Հոկտեմբեր 1960:
«Հայկական երկու ձեռնարկներ.
ա. Կիլիկիոյ թագաւորութիւնը շարունակելու
բ. եւ Աղթամար կեդրոնով Վասպուրականի թագաւորութիւն մը հաստատելու համար:
Մերձաւոր Արեւելքի քաղաքական Վիճակը, Թուրքերու Եւրոպա անցքին

պատճառած սարսափը»:

Գ. Ուրբաթ, 21 Հոկտեմբեր 1960:
«Յովհաննէս Է. Աջակիր, Ստեփաննոս Ե. Սալամաստեցի, Միքայէլ Սեբաստացի, Ստեփաննոս Զ. Առընչեցի, Թադէոս եւ Կիլիկիոյ Ազարիա Կաթողիկոսներու ըրած քաղաքական ձեռնարկները. – 1541էջ մինչեւ 1601»:

Դ. Ուրբաթ, 28 Հոկտեմբեր 1960:
«ԺԶ. դարու երկրորդ կիսուն Հայկական դիմումներ Քրիստոնեայ աշխարհէն օգնութիւն խնդրելու համար»:

Ե. Ուրբաթ, 4 Նոյեմբեր 1960:
«Աբգար Դպիր Եւդոկիացիի առաքելութիւնը եւ անոր հետեւանքները»:

Զ. Ուրբաթ, 11 Նոյեմբեր 1960:
«Հայ ազատագրական շարժումներ»:

Է. Ուրբաթ, 18 Նոյեմբեր 1960:
«Հայ ազատագրական շարժումներ (շարունակութիւն)»:

Ը. Ուրբաթ, 2 Դեկտեմբեր 1960:
«Հայ ազատագրական շարժումներ (շարունակութիւն)»:

Թ. Ուրբաթ, 16 Դեկտեմբեր 1960:
«Հայ եւ վրացի գործակցութիւն՝ ԺԶ. դարու ազատագրութեան»:

Ժ. Ուրբաթ, 20 Յունուար 1961:
«Հայ եւ Վրացական գործակցութիւն, ազատագրական պայքարի համար»:

ԺԱ. Ուրբաթ, 3 Փետրուար 1961:
«ԺԷ. դարու մէջ հայ եւ յոյն գործակցութեան փորձ մը, ազատագրութեան համար»:

ԺԲ. Ուրբաթ, 17 Փետրուար 1961:
«ԺԷ. դարուն վերջին կէսին՝ Արեւմուտքի մէջ հայերու ազատագրական ձեռնարկները»:

ԺԳ. Ուրբաթ, 10 Մարտ 1961:
«Յակոբ Կաթողիկոս Ջուղայեցի»:

ԺԴ. Ուրբաթ, 24 Մարտ 1961։
«Հայ ազատագրական նոր ձեռնարկներ եւ անոնց շուրջ չարաշահութիւններ»։

ԺԵ. Ուրբաթ, 7 Ապրիլ 1961։
«Իսրայէլ Օրի՝ իբր քաղաքական գործիչ»։

ԺԶ. Ուրբաթ, 28 Ապրիլ 1961։
«Հայ ազատագրական շարժման ժողովրդային զանգուածներու մասնակցութիւնը»։

ԺԷ. Ուրբաթ, 12 Մայիս 1961։
«Դաւիթ Բէկի իշխանութիւնը»։

Առաջին դասախօսութեան առիթով գրուած հակիրճ նկարագրանի մը մէջ, կը տեղեկացուի.

*Դասընթացքի վերջաւորութեան – փետրուար* 1961, *ունկնդիր ուսանողները քննութիւն մը պիտի անցնեն եւ առաջին երեք յաջողողները պիտի ստանան արժէքաւոր մրցանակներ։*
(«Պր. Արշակ Ալպօյաճեանի դասախօսութիւնը», *Արեւ*, 12 Հոկտեմբեր 1960, ԽԶ. Տարի, թիւ 12.723, էջ 3։)

Պատահաբար գտնուեցան դասախօսութիւններուն գրամեքենագրուած ամբողջական էջերը (66 թերթ, մեքենագրուած՝ երեսի մէկ կողմը)։ Հաւանաբար, ասոնք այն օրինակներն են, որոնք բաժնուած են ունկնդիր ուսանողներուն՝ քննութեան պատրաստուելու համար։

Մեքենագիր օրինակը՝ ամբողջական ըլլալով հանդերձ, քանակապէս նուազ է վերոյիշեալ դասախօսութիւններու շարքէն։ Կարելի է ենթադրել, որ Ալպօյաճեան անհրաժեշտ չէ նկատած քանի մը դասախօսութեան նիւթերը բաժնել ուսանողներուն։

Ահաւասիկ մեքենագիրներուն բովանդակութիւնը.

Ա. 14 Հոկտեմբեր 1960։
«Ձեռնարկներ հայ թագաւորութիւնը շարունակելու»։

Բ. 21 Հոկտեմբեր 1960։
[Առանց խորագիրի]։

Գ. 29 Հոկտեմբեր 1960։
[Առանց խորագիրի]։

Դ. [Առանց թուականի եւ խորագիրի]:

Ե. 11 Նոյեմբեր 1960:
[Առանց խորագիրի]:

Զ. [Առանց թուականի]:
«ԺԵ.-ԺԶ. դարերու հայ ազատագրական շարժումներու հետքերը Պարսկահայաստանի եւ Կովկասի սահմաններուն մէջ»:

Է. [Առանց թուականի]:
«Հայ եւ վրացական գործակցութիւն ազատագրելու համար Հայաստանը եւ Վրաստանը (1550-1600)»:

Ը. 3 Փետրուար 1961:
«ԺԷ. դարուն մէջ հայ եւ յոյն գործակցութեան փորձ մը, ազատագրութեան համար»

Թ. [Առանց թուականի եւ խորագիրի]:

Ժ. [Առանց թուականի]:
«ԺԷ. դարուն վերջին կէսին մէջ Արեւմուտքի մէջ հայերու ազատագրութեան ձեռնարկները»:

ԺԱ. [Առանց թուականի]:
«Յակոբ Կաթ. Ջուղայեցի (1598 Ապրիլ – 1660 Օգոստոս):

ԺԲ. [Առանց թուականի]:
«Հայ ազատագրութեան նոր ձեռնարկներ եւ անոնց շուրջ չարաշահումներ»:

ԺԳ. [Առանց թուականի]:
«Իսրայէլ Օրի իբր քաղաքական գործիչ (1698-1711)»:

ԺԴ. [Առանց թուականի]:
«Հայ ազատագրման շարժման ժողովրդային զանգուածներու մասնակցութիւնը»:

Մեքենագիր օրինակը ամբողջութեամբ ներկայացուած է ներկայ հրատարակութեան մէջ: Կը հրատարակուի առաջին անգամ:

ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ

## Ա. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՁԵՌՆԱՐԿՆԵՐ ՀԱՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ՇԱՐՈՒՆԱԿԵԼՈՒ

Պատմութիւնը փորձառութիւն է, ըսուած է։ Այսինքն, անցեալին պատահած պատմական դէպքերը պէտք է խրատ ըլլան ապագայ սերունդներուն։ Այս պատճառաւ ալ պատմութիւնը կ՚ուսուցանեն դպրոցներու մէջ, որպէսզի, յաջորդ սերունդները լաւ ճանչնան հիներու սխալը եւ զանոնք չկրկնեն։ Յետադարձ ակնարկ մը նետելով մեր պատմութեան դէպքերուն վրայ, պիտի տեսնենք, թէ Կիլիկիոյ մէջ Ռուբինեանց թագաւորութեան գոյութենէն մինչեւ մեր օրերը, տեւական սխալներ գործուած են, նոյնանման պարագաներու մէջ, առանց երբէք խրատուելու անցեալի դասերէն։ Մեր դրացիները մօտէն ուսումնասիրելու եւ անոնց հետ շփում ստեղծելու առիթ ունենալով հանդերձ, զանոնք անտեսած ենք եւ հեռաւոր օտարներուն մօտեցած, հեռուին Սուրբը զօրաւոր նկատելով։ Կ՚արժէ ուրեմն աչք մը պտտցնել Կիլիկիոյ մէջ, 1080ին կազմուած Ռուբինեան թագաւորութեան վրայ, որ դիմացաւ մինչեւ 1375, թէեւ այս ժամանակաշրջանին (1080-1375) Կիլիկիոյ մէջ տիրող հայ թագաւորութիւնը միակ հարստութեամբ չէ ապրած, այլ չորս արքայական տուներ իրարու յաջորդած են։ Այս չորս տուները, որոնք յաջորդաբար Կիլիկիոյ հայկական գահը գրաւած են՝ հետեւեալներն են, Ռուբինեանք, որոնց յաջորդեցին Հեթումեանք, եւ ասոնց ալ՝ օտար Լուսինեանք եւ վերջապէս անծանօթ ընտանիքի մը մէկ անդամին տիրապետութիւնը։

Սկզբնական շրջանին Ռուբինեանք հաստատուած էին Տաւրոսի եւ Ամանոսի լեռներուն վրայ եւ իրենց իշխանութիւնը հետզհետէ ընդարձակելով ուզած են մեծ պետութիւն մը ստեղծել։ Անոնք օգտագործած են խաչակիրներու դէպի Արեւելք ըրած արշաւանքները։ Կիլիկիոյ հայերը անձնուիրաբար, ի սէր քրիստոնէութեան եւ խաչակրութեան յաջողութեան համար, անձնուիրաբար անփոխարինելի զոհողութիւններ ըրած են, օգնելով զէնքով եւ մանաւանդ պարէնով խաչակիրներուն այն յոյսով թէ անոնք կրնային հայոց օգնել՝ Մահմետական աշխարհի մէջ մոռցուած քրիստոնեաներուն։ Խաչակիրները շահագործելով հայոց անձնուիրութիւնը, Ռուբէնի (1080-1095) հետ խնամիացան։ Եդեսիոյ կոմս Ճօսլին կնութեան առաւ Կոստանդին իշխանին աղջիկը։ Խաչակիրներու Անտիոքի պաշարման ատեն՝ Հայոց թանկագին ծառայութիւններուն ի վարձատրութիւն անոր

շնորհեցին «Կոմս» եւ «Մարքիզ» տիտղոսը եւ աւելի ուշ, 1198ին, Հայոց Լեւոն իշխանին ԹԱԳԱՒՈՐ տիտղոսը տուին եւ անկէ օգտուեցան: Սակայն երբ խլամները զօրացան, որեւէ դրական ձեռնտուութիւն չընծայեցին Ռուբինեան Հայ թագաւորներուն: Երբ որ խաչակիրները Արեւելքէն հեռացան, Լատին իշխանները, Կոմսեր եւ Դուքսեր, որոնք կ'իշխէին խաչակիրներէ գրաւուած հողերուն վրայ (Կիպրոս, Երուսաղէմ, Անտիոք, Եդեսիա, Թրիբոլի, Ասիա) փոխադարձ օգնութիւն չընծայեցին, եւ ինչպէս Լատին իշխանութիւնները, նոյնպէս նաեւ անպաշտպան Հայ թագաւորութիւնը մինակը մնալով ընկճուեցաւ եւ վերջապէս Եգիպտոսի շարունակական յարձակումներուն առջեւ ընկրկեցաւ, վասնզի Հայոց թագաւորները միշտ յոյս դրին Քրիստոնեայ աշխարհին վրայ, եւ չկրցան մեր մօտաւոր դրացիներուն հետ համաձայնիլ:

Կիլիկեան թագաւորներուն մէջ, միայն Հեթում Ա (1226-1270) է որ չհետեւեցաւ իր նախորդներուն ուղղութեան եւ համաձայնեցաւ իր դրացիներուն հետ եւ դաշինք կնքեց թաթարներուն հետ: Այսպէս ան կրցաւ թաթարներու օգնութեամբ պաշտպանուիլ եւ իր դիրքը ամրացնել, եւ Կիլիկիոյ թագաւորութիւնը պատկառելի ընծայել եւ եգիպտական յարձակումներուն դէմ ապահովել իր երկիրը: Դժբախտաբար իր յաջորդները կրկին յարեցան քրիստոնեայ աշխարհին եւ չարաչար պատժուեցան: Մասնաւորապէս Կիլիկեան թագաւորներէն ոմանք գործեցին մեծ սխալ մը որ շատ սուղի նստաւ հայերուն:

Արդարեւ, հակառակ անոր որ թագաւորը երդում ըրած էր Ս. Գիրքին վրայ թէ այլեւս յարաբերութիւն պիտի չունենայ Եւրոպացիներու հետ, անսալով Հռոմի պապերու խօսքին որ զինքը պարտազերծ կը կացուցանէր իր երդումը պահելու պարտականութենէն, ան գործակցեցաւ քրիստոնեաներուն հետ, ինչ որ սաստիկ գրգռեց եգիպտացիներու ատելութիւնը եւ որուն հետեւանքով երկիրը մատնուեցաւ մեծ դժբախտութեանց: Եգիպտացիք, Երուսաղէմէն մինչեւ Հալէպի տիրապետելէ ետք իրենց ուժերը կեդրոնացուցին Կիլիկիոյ վրայ, եւ 1375ին, Լեւոն Ե. Լուսինեան, Սիսի մէջ, մէկ տարի թագաւորելէ ետք, գերի ինկաւ եւ տարուեցաւ Հալէպ, հոնկէ ալ Եգիպտոս, Գահիրէ, ուր կ'ըսեն թէ ան արգելափակուած էր Խան Խալիլի կողմերը:

Լեւոն Ե. թագաւորը իր խոստովանահօր Տարտէլի միջոցաւ կրցաւ Եւրոպայի կաթոլիկ թագաւորներուն լուր հասցնել իր վիճակի մասին եւ անոնցմէ օգնութիւն խնդրեց, որպէսզի իր Եգիպտոսէն հեռանալու արտօնութիւնը ձեռք բերեն. իսկ Գահիրէի Հայ գաղութը, երաշխաւորութեամբ զինքը բանտէն ազատած եւ բնակարանի մը մէջ տեղաւորած էր:

Եգիպտոսի Սուլթանը Սպանիոյ թագաւորութեան միջնորդութեանց ընդառաջելով, ազատ արձակեց Լեւոն Ե. որ 1382 անցաւ Սպանիա ուր Մատրիտի ճորտ թագաւոր եղաւ. ապա անցաւ Ֆրանսա եւ Անգլիա, այս երկու պետութեանց միջեւ ծագած անհամաձայնութիւնը հարթելու, հաշտութիւն գոյացնելու եւ համոզելու

համար զանոնք որ նոր խաչակրութեան մը ձեռնարկեն եւ փրկեն Կիլիկիան, սակայն իր հաշտարար ձեռնարկը վիժեցաւ եւ օգնութիւն ալ չընծայուեցաւ։ Այսպէս առանց որեւէ յաջողութեան, Լեւոն Ե. մեռաւ 1393ին, Փարիզի մէջ։

Ընդհանրապէս, Հայոց պատմութեան դասագիրքերը Լեւոն Ե.ի գերութեան թուականը (1375ը) վախճանը կը նկատեն նաեւ Կիլիկիոյ Հայոց թագաւորութեան։ Նորագոյն փաստեր եւ տուեալներ կուգան հաստատելու թէ Կիլիկիոյ թագաւորութիւնը վերջնականապէս ջնջուեցաւ միայն 1425ին։ Այս 50 տարուայ ժամանակաշրջանին (1375-1425) կը յիշուի Կոստանդին անունով անձ մը, որ հաւանաբար իշխանական ծագում ունէր եւ կը կրէր թագաւորի տիտղոս։ Նոյնպէս, այս յիսուն տարուայ ընթացքին Տաւրոսի եւ Ամանորի լեռներուն վրայ հաստատուած հայ իշխաններ, ջանացած են իրենց կիսանկախ վիճակը շարունակել։ Ասոնց մէջ է անշուշտ վերոյիշեալ Կոստանդինը, որ բուռն կերպով պայքարած է ամբողջ 50 տարի։ Ան մինչեւ իսկ Սիսն ալ գրաւած է։ Սակայն ժամանակը աննպաստ էր, վասնզի այդ թուականներուն Ասիոյ խորերէն դէպի Արեւմուտք կ'արշաւէր Լէնկթիմուր, որ Կիլիկիա մտաւ եւ տիրակալեց։ Սակայն Կեդրոնական Ասիոյ մէջ խռովութիւններ ծագեցան, որով ստիպուեցաւ ետ դառնալ։ Լէնկթիմուրի հեռանալէն վերջ Փոքր Ասիոյ մէջ նորէն շարժում մը ստեղծուեցաւ եւ Եգիպտացիք դարձեալ Կիլիկիա արշաւեցին։ Ռամատան անուն եգիպտացի զօրավար մը ուզեց Սիսը իր իշխանութեան տակ առնել։ Կոստանդին չկրցաւ Ռամատանի դիմադրել եւ տեսաւ թէ ապարդիւն պիտի ըլլան իր ջանքերը, խոհեմութիւն համարեց Սիսէն հեռացնել ժողովուրդին վերին դասակարգը։ Ուստի օրուան կաթողիկոս՝ Կարապետ Բ. Քղեցիի (1393-1408) նախագահութեամբ գումարուած խորհրդակցութեան մը հետեւանքով որոշուեցաւ երկիրը ձգել եւ հեռանալ ու ապաստանիլ աւելի ապահով վայրեր։ Որոշուեցաւ որ Սիսէն մեկնին անոնք, որոնք ի վիճակի են, իսկ միւսները մնան Սիս։ Այսպէս ըստ յիշատակարաններու 30.000 ընտանիք գաղթեց (թէեւ այս թիւը չափազանցուած կը թուի Սիսի նման փոքր քաղաքի մը համար) դէպի Կիպրոս, ուսկից անոնք անցան Իտալիոյ ծովեզերեայ քաղաքները։ Գաղթող այս խումբին գլուխը անցաւ նոյնինքն Կոստանդին թագաւորին թոռը՝ Կարապետ։ Միւս կողմէ Կոստանդին քաջաբար շարունակեց դիմադրութիւնը մահմետականներու դէմ, մինչեւ 1424 եւ տեսնելով թէ այլեւս անկարող պիտի ըլլայ իր գոյութիւնը պահել Կիլիկիոյ մէջ, անցաւ Կիպրոս, եւ այսպէսով վերջ գտաւ Կիլիկիոյ թագաւորութիւնը 1424ին։ Այս 50 տարուան ժամանակամիջոցին մէջ, ուր տեւական կռիւ, ջարդ ու պայքար կար, կարելի չէ անդորրութեան եւ խաղաղութեան մասին խօսիլ։ Այլեւս գոյութիւն չունէր Կիլիկիոյ անցեալի բարգաւաճ վիճակը։ Երկիրը աղքատած էր, ոչ վաճառականութիւն, ոչ արուեստ, վայրագ եւ քաղաքակիրթ ժողովուրդ մը եկած հաստատուած էր ամէն կողմ եւ հանգիստ չէր տար բնիկներուն որ վերակազմակերպուին։ Դժբախտաբար այս ժամանակաշրջանը շատ տխուր է։ Արեւելքէն՝

թաթարները, հարաւէն՝ Եգիպտացիք, իսկ Արեւմուտքէն՝ նոր կազմակերպուող թուրքերը, ոտնակոխ կ'ընէին Փոքր Ասիան եւ Սուրիան։ Փոքր Ասիոյ մէջ շատ կանուխ ծնած էր այս պայքարը, Մահմետականներու եւ քրիստոնեաներու միջեւ։ Բիւզանդիոն փոխանակ Հայաստանը զօրացնելու կը տկարացնէր, որպէսզի հայերը նեղը մնալով յունադաւան դառնան եւ ձուլուին։ Յետագային Մահմետականներն ալ, իրենց կարգին, ուղղակի թէ անուղղակի կերպով աշխատեցան հայերը կրօնափոխ դարձնել։ Բիւզանդիոնի մէջ, դարերու ընթացքին շատ մը ազգեր յունադաւան դարձընելով ստեղծուած էր արուեստական ազգ մը՝ Բիւզանդացիք, տարօրինակ խառնուրդ մը, որոնք իրենց ցեղային առանձնայատկութիւնները կորսնցուցած եւ կրօնական կապով իրարու միացած, պետութեան կը հնազանդէին։ Արիւնի եւ ցեղային ժառանգականութիւն չկար, Բիւզանդիոնի բնակչութեան մէջ, հոն, 20-25 ազգեր, եկեղեցիով միացած էին։ Եթէ ուզէինք Բիւզանդիոնի կայսրութիւնը նմանցնել այսօրուայ պետութիւններէն մէկուն, պէտք է ըսել թէ կը նմանի այսօրուայ Ամերիկայի Միացեալ Նահանգներուն, ուրտեղ եկւոր եւ բնիկ ցեղեր իրարու խառնուած են, ունին ներքին պայքարներ, անհասկացողութիւններ եւն, բայց Միացեալ Նահանգաց քաղաքացի են։ Բիւզանդիոնի մէջ, այդ աւելի քան երկու տասնեակ ազգերէն մէկն ալ հայերն էին, որոնք կարեւոր դեր կատարած են այդ խառնարանին մէջ, կորսուած էին յունադաւան եւ բիւզանդացի դառնալով։ Անոնք ամենանշանաւոր դեր կատարած են այս կայսրութեան մէջ, իբրեւ ամենէն գործունեայ եւ ամենէն ձեռներէցներէն մէկը կայսրութեան բնակչութիւնը կազմող ազգերու խառնուրդին մէջ։ Անոնք իսլամներու յառաջացման դէմ մղուած ամենէն նշանաւոր դերը կատարած էին մեծ թիւով հայեր պարունակող բիւզանդական բանակներուն գլուխը անցած։ Այդ հայ զօրավարներէն բաւական մեծ թիւով կայսերական գահի բարձրացողներ եղան եւ մեծ անուն ձգեցին։ Հայերը բիւզանդական Օրթոտոքս (յունադաւան) եկեղեցիին տուած են պատրիարքներ, եպիսկոպոսներ եւ բիւզանդական մշակոյթին ծառայողներ։ Թերեւս, մահմետականները Օսմանցիներէն առաջ անցնէին Պոլսոյ եւ Տարտանէլի նեղուցները եւ գրաւէին Եւրոպական հողամասեր, եթէ հայ զօրավարներ եւ հայ զինուորական գունդեր չպաշտպանէին Եփրատ գիծը Իսլամներու յարձակումներուն դէմ։

Նոյն երեւոյթը Կիլիկիոյ կործանումին մէջ։ Մերձաւոր Արեւելքի կամ Փոքր Ասիոյ մէջ Նոր Կայսրութիւն մը երեւան կ'ելլէր նման Բիւզանդականին։ Այդ Պետութիւնը թուրք-Օսմանեան պետութիւնն էր, եւ Բիւզանդականին պէս կազմուած էր եւ պիտի գար ետքը անոր տեղը գրաւելու։ Ասոնք աշիրէթապետական ցեղախումբ մըն էին, ոչ աւելի քան 50.000 հոգիէ բաղկացած։ Իրենց պետերը Էրթողրուլ եւ Օսման, Սելճուքներու Սուլթան Ալաէտտինէն պզտիկ հողամաս մը ստացան հոն ապրելու համար։ Անոնք կ'առաջարկեն յոյներէն քիչ քիչ հողեր գրաւել եւ ճորտ ըլլալ Ալաէտտինի։ Իրենց ստացած հողամասը

հիմակուան Էսկիշէհիր քաղաքին մօտն էր, ուր անոնք կազմեցին շատ նախնական իշխանութիւն մը։ Ժամանակակիցներ կը պատմեն, թէ Օսման ցեղապետը պզտիկ գորգ մը միայն ունի եղեր, որուն վրայ թէ իր աղօթքը կ՚ընէ եղեր եւ թէ նստած դատեր կը տեսնէր։ Օսման, քիչ քիչ հողեր գրաւելով կ՚ընդարձակէ իր իշխանութեան սահմանները։ Երբ Սելճուք Սուլթանը իր պետութիւնը իր զաւակներուն միջեւ բաժնեց, Գոնիայի Սելճուք թուրք Սուլթանութիւնը տկարացաւ ու քայքայուեցաւ։

Օսման, ճարտար մարդ ասոնցմէ մէկուն աղջիկ տուաւ, միւսէն աղջիկ առաւ, ու խնամիական կապերով իր շուրջը բոլորեց այս ամէնքը, եւ օգտագործեց ստեղծուած առիթները։ Օսման, իր իշխանութիւնը ընդարձակելէ ետք, հաստատեց օրէնքներ։ Անոր առաջին գործը եղաւ Ենիչէրիական վաշտերու կազմակերպութիւնը։ Այս գունդերը կազմելու համար, որպէս օրէնք սահմանուեցաւ որ քրիստոնեայ ընտանիքներու արու զաւակներէն տասէն մէկը, որպէս տուրք կառավարութեան պիտի յանձնուի։ Կառավարութիւնը զանոնք կը հաւաքէ զօրանոցներու մէջ, որոնք կը կոչուէին ԵՆԻՉԷՐԻԱԿԱՆ ՕՃԱԽՆԵՐ, հոն, քրիստոնեաները կրօնափոխութեան կ՚ենթարկուէին, ըստ նոյն օրէնքին։ Ենիչէրիի մը համար զինուորագրութիւնը մշտնջենական էր։ Կառավարութիւնը զանոնք կը հաստատէր, իրենց կազմած ընտանիքներով, երկրի սահմանագլուխներուն վրայ, որպէսզի պատերազմի պարագային պատրաստ ըլլան։

Ենիչէրութեան կազմութիւնը պատճառ եղաւ երկրի քայքայման, վասնզի այդ զինուորները անկարգապահ էին։ Անոնք, որեւէ ատեն, եւ որեւէ տեղ իրաւունք ունէին քրիստոնեայի ինչքը իւրացնելու, կողոպտելու, կառավարութիւնը արգելք չէր ըլլար։ Ժամանակի ընթացքին, այս ձեւով անիշխանութիւն ստեղծուեցաւ երկրին մէջ։ Եղաւ ատեն մը որ, Ենիչէրութիւնը իսկական պատուհաս մը եղաւ պետութեան գլխուն։ Անոնց պահանջով քանի քանի Սուլթաններ գահընկեց եղան, իսկ սպաննուած վաչապետներու հաշիւը չկայ։ Կը պատմեն թէ Սուլթան Իպրահիմի ատեն (1640-1648) երեք ամիսը անգամ մը վարչապետ (Եպարքոս) կը փոխուէր, իսկ եպարքոս անուանուողին առաջին գործը կ՚ըլլար իր ԴԱՄԲԱՐԱՆԸ պատրաստել, քաջ գիտնալով որ, շատ հաւանօրէն պիտի գլխատուէր։

Քրիստոնեաները կրօնափոխ ընելու համար այլ ձեւեր ալ կիրարկուած են Օսմանցիներու կողմէ։ Այսպէս, օրէնք մը կար, որ իրաւունք կուտար այն քրիստոնեային որ մահմետական կը դառնար, իւրացնելու հօրենական ամբողջ ստացուածքը, որով միւս ժառանգորդները, ոչ միայն բան մը չէին ստանար, այլ նաեւ իրաւունք չունէին բողոքելու։ Այս օրէնքը քաջալերեց ընչաքաղց մարդիկը, որ հաւատափոխ ըլլան ոչ թէ համոզումով, այլ հարստանալու ցանկութեամբ։ Եւ նմանօրինակ այլ օրէնքներ, պատճառ եղան որ Օսմանեան իշխանութեան մէջ իսլամ հաւատացեալներու թիւը զօրանայ եւ բազմանայ։

Թուրքերը երբ Ասիոյ մէջ զօրացան ու դէպի Եւրոպա սկսան արշաւել, իրենց

արշաւանքը շատ նախնական վիճակ մը ունէր։ Սակայն եւրոպացիք չկրցան դիմադրել, որովհետեւ իրարու դէմ լարուած էին դաւանական անիմաստ վէճերով։

Բայց թուրքերը կրցան խրախուսել իրենց զօրքը, օգտագործելով Գուրանի մէկ ընդունուած Գատէրի վարդապետութեամբ, որուն համաձայն եթէ հաւատացեալ մը սահմանուած է մեռնելու, ան ուր որ ալ ըլլայ մահը պիտի դիմաւորէ. իսկ եթէ կեանք ունի տակաւին, կրակին մէջն ալ եթէ նետուի, իրեն բան մը չպիտի պատահի։ Թուրք զինուորը այս հաւատքով քաջաբար կը կռուէր։ Ասով մեծ յաջողութիւններ ձեռք բերած է թուրք բանակը։

Մինչեւ Դանուպ տարածուելէ ետք թուրքերը 1453 Մայիս 29ին Կ. Պոլիսը գրաւեցին, որ արդէն ամէն կողմէն պաշարուած էր։ Կ. Պոլսոյ գրաւումը մեծ յաղթանակ մըն էր թուրքերուն համար եւ մեծ սրտաբեկութիւն քրիստոնէութեան համար։ Կ. Պոլիս քրիստոնէութեան պատուարն էր։ Անոր անկումը մեծ յուզում պատճառեց։ Ամբողջ Եւրոպան տակն ու վրայ եղաւ, բայց եւրոպացիք Բիւզանդիոնի ոչ մէկ օգնութիւն ըրին, վերահաստատելու համար այդ պետութիւնը։ Կազմեցին ծրագիրներ, բայց բան մըն ալ չըրին։ Ընդհակառակը անոնք գործեցին կարգ մը սխալներ, որոնք պատճառ եղան որ թուրքերը աւելի խստանան քրիստոնեաներուն հանդէպ։ Օրինակի համար, Հռոմի Պիոս Բ. Պապը 1459ին նամակ մը գրած է Պոլիսը գրաւող Ֆաթիհ Սուլթան Մէհմէտին, անոր առաջարկելով որ քրիստոնէութիւնը ընդունի, որուն փոխարէն կը խոստանար որ Եւրոպայի տէրութիւնները զինքը պիտի նկատէին Բիւզանդիոնի Կայսրերուն յաջորդը...։

Ֆաթիհ մերժեց այս անհեթեթ առաջարկը։ Հռոմի այլ պապեր, յաջորդաբար փորձեր ըրին Պոլիսը ազատելու համար, եւ ջանացին խաչակրութիւններ կազմակերպել բայց յաջողութիւն չգտան։

Ֆաթիհ, Կ. Պոլիսը գրաւելէ ետք, հրաման արձակեց ԵՐԵՔ ՕՐ քրիստոնեաները ջարդել։ Տեղի ունեցաւ զարհուրելի ջարդեր, մահէն ազատողները ԻՏԱԼԻԱ փախան, իրենց հետ տանելով Մշակոյթի վերաբերեալ անփոխարինելի աւանդներ – ձեռագիրներ, արձաններ եւն.–։ Այսպիսով Կ. Պոլիսը կորսնցուց իր մշակոյթը, գիտութիւնը, նախնեաց թողած մատենագրութիւնը։

Կ. Պոլսէն հեռացող մտաւորականները եւ գիտնականները, Եւրոպայի մէջ հիմք դրին մշակութային շարժումի մը, որ ժամանակի ընթացքին աւելի ընդարձակուելով դարձաւ Վերածննդեան Մեծ Շարժումը։

## Բ. ԴԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Լէնկթիմուր երբ կեդրոնական Ասիայէն դէպի Արեւմուտք արշաւեց, Հայաստանի մէջ կ'իշխէին Գարա-Գոյունլու եւ Աք-Գոյունլու անուններով ծանօթ թիւրքմէն իշխանութիւնները, որոնք նուաճուեցան էօզպէքթաթար աշխարհակալէն: Լէնկթիմուր գրաւեց մինչեւ Եփրատի եզերքը. Հայաստանի տիրող պզտիկ իշխանութիւնները փախան թուրք Սուլթան Պայազիտի մօտ որ օգնեց անոնց: Ասիկա պատճառ եղաւ թուրք-թաթար պատերազմի մը: Վճռական ճակատամարտը մղուեցաւ Անգարայի մօտ (1404ին): Լէնկթիմուր յաղթեց, իսկ Օսմանցի Սուլթանը՝ Պայազիտ, գերի բռնուեցաւ: Լէնկթիմուր Պայազիտը տարաւ Սըմըրղանտ, վանդակի մը մէջ արգելափակեց իբր թէ գառազեղի գազան մը եղած ըլլար ան: Պայազիտ այդ վիճակին մէջ մեռաւ: Անոր մահէն ետք, թրքական պետութիւնը կտոր կտոր եղաւ: Պայազիտի չորս տղաքը իրենց միջեւ բաժնեցին իրենց հօր կայսրութիւնը: Այսպիսով ստեղծուեցաւ չորս անջատ պետութիւններ, որոնք իրարու դէմ կռուեցան, մինչեւ որ միանալով վերակազմուեցաւ Օսմանեան Տէրութիւնը: Այնպէս որ, պահ մը Եփրատէն դէպի Արեւելք, ամբողջ հողամասը թաթարական տիրապետութեան անցաւ: Սակայն երբ Ասիոյ խորերուն մէջ պատահած խռովութեանց պատճառաւ Լէնկթիմուր ստիպուեցաւ Փոքր-Ասիան ձգել ու կեդրոնական Ասիա դառնալ, Գարա-Գոյունլու եւ Աք-Գոյունլու իշխանապետութիւնները վերակազմուեցան եւ շարունակեցին իրենց պայքարը: Երկիրը խառնակութեան մատնուեցաւ եւ շատ մը պզտիկ իշխանապետութիւններ կազմուեցան, որոնք իրարու դէմ մաքառեցան, մերթ ընդունելով թիւրքմէններու վեհապետներուն գերիշխանութիւնը, գոնէ անուանապէս: Այս խառնակ շրջանին, հայերը շատ տառապեցան: Միայն լեռնային շրջաններու հայերը կրցան պահել իրենց կէս-անկախ վիճակը քիչ շատ:

Անոնց կարեւոր մասը զինաթափ չըլլալու համար, իսլամութիւնը ընդունեցին եւ պահեցին իրենց կէս անկախ գոյութիւնը լեռներու մէջ:

Թովմա Մեծափեցի պատմագէտը, իր գործին մէջ տեղ մը կ'ըսէ «Ոմանք գնացեալ խառնուեցան ի Քուրդն Բաղեշոյ, Մշոյ, եւ Սասնոյն վասն աղքատութեան եւ սովոյն դառնութեան ելեալ ի հաւատոյ դարձան յանհաւատութեան աւելի քան ոչ հինգ հարիւր ոգի» (էջ 95):

Այս տեսակ պարագաներ շատ պատահեցան եւ հայերը իսլամանալ սկսան: Անոնք ժամանակի ընթացքին կազմեցին այն լեռնցի ցեղախումբերը, որոնց այժմ կը կոչենք Քիւրտեր, որոնք թէեւ մահմետականացած, ինչպէս նաեւ կորսնցուցած իրենց լեզուն՝ պահած են քրիստոնէական կարգ մը սովորութիւններ, որոնք հայկական են: Անոնք ցեղային կազմով ալ կը նմանին հայոց: Այս իրողութիւնը

կը հաստատեն ոչ միայն հայ, այլ եւ օտար ուղեւորներ, որոնք իրենց ուղեւորութեանց ընթացքին հանդիպած են այս ցեղախումբերուն։

Միւս կողմէ սակայն, Մերձաւոր Ասիոյ մէջ ՕՍՄԱՆՑԻՆԵՐԸ սկսեր էին զօրանալ։ Այս պետութիւնը (Օսմանեան) անզուսպ գազան մը եղաւ Արեւելքի համար, մանաւանդ Պոլիսի գրաւումէն ետք (1453)։ Եւրոպա ի զուր ձեռնարկեց խաչակրութիւններու, վանելու համար Եւրոպայէն թուրքերը։ Հռոմի պապերը չկրցան Եւրոպայի քրիստոնեայ թագաւորները քով քովի բերել, ու համերաշխութեամբ նոր խաչակրութիւններ կազմել։ Անոնք ձախողեցան իրենց այս ձեռնարկներուն մէջ, որովհետեւ մարդիկ այլեւս հասկցած էին թէ Եւրոպական տէրութիւնները ընդհանրապէս շահադիտօրէն մօտեցած էին այս տեսակ ձեռնարկներուն։ Հետեւաբար Եւրոպայի քրիստոնեայ տէրութիւններուն մեծամասնութիւնը անտարբեր մնաց։ Այս ժամանակաշրջանին (15րդ դարու սկիզբը) Հայաստան իրերայաջորդ պատերազմներու թատերավայր եղած էր։ Հայաստան Գարա-Գոյունլուներէն գրաւուած էր։ Ասոնց մրցակիցներն էին Էօզպէք-թաթարները, որոնք կը մաքառէին վերագրաւելու Հայաստանը։

Գարա-Գոյունլուներու նոր թագաւորը Ճիհան Շահ, տեսնելով որ իր մրցակիցները աւելի զօրաւոր էին, եւ պատերազմները ապարդիւն, իմաստուն քաղաքականութեան մը հետեւեցաւ։

Ան համաձայնութեան եկաւ Էօզպէք-թաթարներու պետին հետ, որ Լէնկթիմուրի թոռն էր։ Համաձայնութեան ամենակարեւոր կէտը այն էր որ, Ճիհան Շահ պիտի ճանչնար Լէնկթիմուրի թոռան գերիշխանութիւնը իր սահմաններուն մէջ։ Իսկ Ճիհան Շահ ալ, ազատ պիտի ըլլար, իր սահմաններէն ներս ուզած ձեւովը երկիրը կառավարելու։ Այսպէս Հայաստանի մեծագոյն մասը անոր տիրապետութեանը տակ մնաց։ Ինչպէս որ յետագայ դէպքերը ցոյց տուին, Ճիհան Շահի ընդգրկած ուղղութիւնը հեռատեսութիւն էր։

Նոյնպէս ան ջանաց որ իր պետութիւնը կռթնի երկրի բնակիչներուն մեծամասնութեան վրայ, ուստի ան ինքզինքը կոչեց «Շահի Արմէն» այսինքն Հայոց թագաւոր, վասնզի երկրի բնակչութեան մեծամասնութիւնը հայեր էին։ Ան աշխատեցաւ սիրաշահիլ եւ իրեն կապել հայերը, որպէսզի հաւատարմօրէն ծառայեն իրեն։ Ճիհան Շահի օրով հայոց վիճակը բարուոքեցաւ։ Ան, հայոց տուաւ նախ կրօնական ազատութիւն, իր իշխանութեան կեդրոնն էր ԴԱՒՐԷԺ քաղաքը (Ատրպատական)։ Ան, ոչ միայն ինքզինքը հայոց թագաւոր կը կոչէր, այլ նաեւ ինքզինքը հայոց բարեկամ ցոյց կուտար ու անոնց հովանաւորողը։ Հայերը, տեսնելով Ճիհան Շահի բարեացակամութիւնը, այնպէս կարծեցին թէ կրնան Հայկական անկախութիւն մը ստեղծել եւ սկսան ներքին աշխատանք տանիլ հայկական թագաւորութիւն մը ստեղծելու նպատակաւ։ Դժբախտաբար չունինք ժամանակակից հայ պատմագիր մը, որ մեզի տար անհրաժեշտ մանրամասնութիւնները։ Միայն ձեռագիրներու յիշատակարաններ հասած են, որոնք լիուլի

չէն լուսաբաներ մեզի: Իրողութիւնը այսպէս ըլլալով հանդերձ, բացայայտ է որ, Ճիհան Շահի օրով, հայերը երկու շարժումի մէկ անգամէն ձեռնարկած են:

Ա.- Հայաստանեայց եկեղեցւոյ վերակազմութիւն.

Բ.- Քաղաքական վարչութիւն ստեղծելու ջանքեր:

Հայկական թագաւորութիւնը Կիլիկիա փոխադրուելէն ետք, հայոց ընդհանրական Կաթողիկոսին աթոռն ալ փոխադրուած էր Սիս ուր Կիլիկիոյ թագաւորութեան անկումէն ետքն ալ կը պահէր իր գոյութիւնը:

Բայց Սիսի աթոռը սկսած էր այլեւս անշքանալ: Սիսի կաթողիկոսները միշտ ճնշումի տակ էին կաթոլիկ եկեղեցիին կամ կաթոլիկամիտ հայ իշխաններու թագաւորներու կողմէ, բնական բան մը եղած էր դրամի, կաշառքի կամ բարեկամութեան միջոցաւ աթոռին տիրանալ: Արդիւնքը այն կ՚ըլլար որ, ժողովուրդը կարեւորութիւն չէր տար այս եկեղեցականներուն: 14րդ դարու վերջաւորութեան եւ 15րդ դարու սկիզբները կը յիշուին կաթողիկոսներ, թիւով 6-7 հատ, որոնք թունաւորումով մեռած են: Արեւելեան Հայաստանի կղերը, առաջքը առնելու համար այս անբաղձալի վիճակին, որուն ենթարկուած էր հայ եկեղեցին, քայքայման նշաններ ցոյց տալով, քանի որ կղերը երկու տարբեր ուղղութեան կը հետեւէր: Կիլիկեան կղերը քաղաքական ակնկալութիւններով, կաթոլիկ կղերին ազդեցութեանը ենթարկուած էր. եւ հայ եկեղեցիի կարգ ու սարքը կը խանգարէր: Արեւելեան Հայաստանի, մասնաւորապէս Վասպուրականի կղերը, բոլորուած Աղթամարի կաթողիկոսութեան շուրջը, աւանդապահ կը հանդիսանար եւ դէմ էր օտարամուտ սովորութեանց: Ասոնք հայ եկեղեցին փրկելու համար օտար ազդեցութիւններէ, հետամուտ եղան, քանի որ այլեւս Կիլիկիոյ մէջ գոյութիւն չունէր Հայոց թագաւորութիւն, Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռը դարձնել իր սկզբնական վայրը՝ Էջմիածին, եւ այն ուղղութեամբ խորհրդակցութիւններ եւ քարոզութիւններ ըրին, եւ լրջօրէն աշխատանքի ձեռնարկեցին:

Ճիհան Շահին արտօնութեամբ, պատուիրակներ սկսան գաւառները շրջիլ եւ միտքերը պատրաստել: Անոնք պատրաստեցին հանրագրութիւններ, եւ 1441ին, Էջմիածնի մէջ գումարեցին Ազգային Ժողով մը, ուր կաթողիկոս ընտրեցին, այս շարժումներէն հեռու գտնուող եկեղեցական մը՝ Կիրակոս Վիրապեցին (1441-1443) սրբակեաց վանական մը, իբր չէզոք, վասնզի կարելի չէր եղած համերաշխութիւնը պահել եւ ընտրողները երկու կուսակցութեան բաժնուած էին: Այս ժողովին կազմութեան մեծապէս նպաստած էր Աղթամարայ Զաքարիա կաթողիկոսը, որուն բարեկամն էր Ճիհան Շահ: Զաքարիա, կարող անձ մը, կ՚ակնկալէր որ զինքը պիտի ընտրեն Ամենայն Հայոց Կաթողիկոս, եւ ինքն ալ Էջմիածին պիտի փոխադրուէր: Արդարեւ իմաստուն քայլ մը առնուած պիտի ըլլար Զաքարիայի ընտրութեամբ, բայց փառասիրութեամբ կարելի չեղաւ այս ընտրութիւնը եւ խանգարուեցաւ Հայ եկեղեցւոյ վերակազմութեան գործը, որ իր բուն նպատակին չհասաւ: Այս գործը անկարելի էր, եթէ չհովանաւորուէր Շահի

Արմէնէն – Ճիհան Շահէն եւ անոր կողմէն Երեւանի կուսակալ կարգուած Եաղուպ խանէն, որ շատ դժուարութիւններ տուաւ։ Զաքարիա, Աղթամարի Կաթողիկոսը որ Ճիհան Շահի բարեկամութիւնը շահած էր եւ մեծ դեր կատարած այս գործին յաջողութեան մէջ, յուսախաբ եղաւ երբ զինքը չընտրեցին, հակառակ որ իրեն խոստացուած էր Էջմիածնի հայրապետական գահը։ Այս պատճառաւ Վասպուրականի կղերին այն մասը որ Զաքարիա կաթողիկոսին կուսակից էր, իրեն իսկ գլխաւորութեամբ հակառակեցաւ Կիրակոս Վիրապեցիին որ իբր խաղաղասէր վանական, հրաժարեցաւ կաթողիկոսութենէ երկու տարի պաշտօնավարելէ ետք, եւ վանք քաշուեցաւ։ Էջմիածնայ շուրջը բոլորուողները դարձեալ Զաքարիան չընտրեցին։ Այս անգամ Զաքարիա, իր բարեկամ Ճիհան Շահի օգնութեամբ գրաւեց Էջմիածինը բռնի եւ սկսաւ կաթողիկոսութիւնը ինք վարել։ Այս բռնական արարքը չքաջալերուեցաւ սակայն եւ ինքն ալ չի կրցաւ մնալ Էջմիածին եւ դարձաւ Աղթամար։ Ամենայն հայոց կաթողիկոսական Աթոռին գեղեցիկ գործը դժբախտաբար զոհ եղաւ կուսակցականութեան եւ հայ եկեղեցին վարչական վերակազմութեան գործը իր առաջադրած նպատակին չհասաւ։

Ուշագրաւ է Աթոռի փոխադրութիւնը կազմակերպողները, միայն Էջմիածնի վերականգնումին համար չէ որ աշխատած են։ Անոնք հետամուտ եղած են նաեւ, Հայաստանի մէջ ինքնիշխան վիճակ մը ստեղծելու եւ քաղաքական իշխանութեան վերակազմութեան ալ հետամուտ ըլլալու, Ճիհան Շահի բարեացակամութենէն օգտուելով։

Թովմա Մեծոփեցի, որ մեծ դեր ունեցած է այս ձեռնարկին մէջ ու գրած է ժամանակակից անցքերը, ըստ իր կենսագրին՝ Կիրակոս վարդապետ Մեծոփեցիի «հանապազ խնդրէր յԱստուած, զի Էջմիածինն վերստին նորոգեսցի, կաթողիկոս եւ թագաւոր նստցի ի յէջմիածինն» ինչպէս կ՚երեւի, պարզ քաղաքական իշխանութեան մը հաստատութիւնն ալ խորհուած է, Ճիհան Շահի բարեմտութենէն օգուտ քաղելով, ոմանք կարծած են թէ ժամանակը եկած էր կազմակերպուելու։ Թովմաս Մեծոփեցի, իր գործին մէջ տեղ մը կ՚ըսէ.

«Դարձեալ գիտելի է թէ վասն էր ի խնդիր ելանք Էջմիածնի իշխանութեան եւ կաթողիկոսութեան սեռին, զի ոչ գայր մեզ թագաւորութեան հրամանք եւ ոչ իշխան, այլ նզովեալ քան զամենայն որդի մարդկան»։

Նոյնպէս ժամանակակից յիշատակարաններ շոյիչ ածականներ տուած են Ճիհան Շահի հասցէին։

Զաքարիայի յաջորդ Ստեփաննոս Դ. որ նոյնպէս Աղթամարի Կաթողիկոսն էր, իր շուրջիններուն հետ կը յղանայ Աղթամարի մէջ թագաւորութիւն մը ստեղծելու ծրագիրը։

Պէտք է գիտնալ թէ Աղթամար կղզին ամբողջութեամբ Աղթամարի Կաթողիկոսութեան կը պատկանէր։ Այս աթոռը տեսակ մը ճորտատիրական էր։ Յիշատակարաններու մէջ, տեղ տեղ Աղթամարի կաթողիկոսները յիշուած են որպէս

կաթողիկոս-թագաւորներ։

Այս գործը որքան ալ քաղաքական ձեռնարկ մըն էր, սակայն օտար տիրականներու առջեւ արդարացումի ճամբայ մը կար։ Աղթամարի կաթողիկոսը իր ճորտատիրական իրաւունքը այդ հողամասին վրայ կրնար ուրիշին փոխանցել։

Բնական է որ Ճիհան Շահի արտօնութիւնը առած էր Ստեփաննոս, որ իր Ամիր Քուրճի եղբօր տղան թագաւոր օծեց Աղթամարի Ս. Խաչ եկեղեցիին մէջ (1465)։

Ստեփաննոս եւ իր շուրջինները կը կարծէին թէ, Ճիհան Շահի տիրապետութեան տակ, հայկական իշխանութիւն մը կարելի պիտի ըլլայ ստեղծել։ Եւ թերեւս յաջողէր։ Բայց նոյն ժամանակ քաղաքական փոփոխութիւն մը տեղի ունեցաւ։ Ճիհան Շահ մեռաւ եւ իր յաջորդը փոխեց անոր քաղաքականութիւնը։ Նոր վեհապետը փոխանակ հայերուն կռթնելու, պարսիկ տարրին կռթնիլ սկսաւ։ Այս քաղաքականութեան հետեւանքը այն եղաւ որ, Աղթամարի մէջ օծուած Հայոց թագաւորը մոռցուեցաւ եւ անոր խօսքը բնաւ չեղաւ։ Այս բանը շատ բնական էր։ Որքան ատեն որ երկրի մը թագաւորը զօրք չունի, իշխանութիւն չունի, բանակ չունի, իր թագաւորութիւնը՝ պարզ, անուանական բան մըն է, եւ բնական է որ հիմ չունենար։

Սակայն նոյն թուականներուն ու անկէ ետքն ալ Վասպուրականի մէջ երկու քաղաքներ կիսանկախ էին եւ իրենց իշխաններուն միջոցաւ կը կառավարուէին։ Այս երկու քաղաքներն էին ԱՄՈՒԿ եւ ՈՍՏԱՆ։ Ոստանի մէջ կ՚իշխէր քիւրտ իշխան մը, որ ինքզինքը, Վասպուրականի վերջին հայ թագաւոր Սենեքերիմի ցեղէն կը նկատէր։

Մինչ այդ Օսմանեան պետութիւնը վերականգնեցաւ եւ զօրացաւ Պոլսոյ եւ Ռումելիի (Եւրոպականք Թուրքիա) գրաւումով։ Յետագային, Օսմանեան թուրքերը խուժեցին Հայաստան եւ 250 տարի շարունակական պատերազմներ մղեցին Պարսիկներու դէմ։ Բնական է որ Հայաստան նորէն աւերուեցաւ։

Զարդ ու սով իրարու յաջորդեցին։ Հայերը նորէն օգնութիւն փնտռելու ելան եւ պատգամաւորութիւններ ղրկեցին դէպի Արեւմուտք, Եւրոպայի քրիստոնեայ պետութիւններէն օգնութիւն ակնկալելով։

Ընդհանրապէս պզտիկ եւ տկար ժողովուրդներ, լոյսի պզտիկ նշոյլներու ետեւէն վազած են, բան մը ակնկալելով անոնցմէ։ Նոյն բանը պատահեցաւ նաեւ մեզի։

## Գ. ԴԱՍԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հայկական իշխանութիւններու ջնջումէն ետք, միայն հայ եկեղեցին եւ անոր հոգեւոր իշխանութիւնը կը մնան իբր ղեկավար եւ առաջնորդ հայ ժողովուրդին: Հետեւաբար մեր պատմութիւնը կը դառնայ Հայոց կաթողիկոսներու պատմութիւն:

ԺԵ. եւ ԺԶ. դարերուն այնքան խառնակ է Հայաստանի վիճակը որ, ամէն ինչ շփոթ է, ինչպէս նաեւ մեր պատմութիւնը:

Այդ ժամանակներուն համար չունինք պատմագիր մը այլ միայն ունինք հատուկտոր յիշատակագրութիւններ, յաճախ ձեռագիրներու յիշատակարաններ են որ կը նպաստեն շրջանին պատմութիւնը լուսաբանելու:

Մեր պատմութեան առանցքը կը կազմէ այդ դարերու Հայ կաթողիկոսներու պատմութիւնը, որ ամբողջական կերպով ներկայացնել աշխատած են երկու հեղինակներ. մէկը՝ Հ. Միքայէլ վրդ. Չամչեան եւ միւսը՝ Մաղաքիա Արք. Օրմանեան որ իրենց ուղղութեամբ իրարու հակառակ են, մին միշտ կաթոլիկութեան հակամէտ եւ միւսը՝ հակակաթոլիկ:

Հետեւաբար այս շրջանին ճշգրիտ պատմութիւնը տալու համար

Ա. Կը պակսին բաւականաչափ աղբիւրներ

Բ. Յստակութիւն դէպքերու եւ անցքերու

Մասնաւորապէս շփոթ ստեղծող պարագաներէն մին է Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան աթոռին վրայ իբր «աթոռակից» միեւնոյն ատեն մի քանի կաթողիկոսներու գոյութիւնը, որով միալար կերպով շարունակութիւնը կը խանգարուի, եւ խառնակութիւն կը ստեղծուի:

Այս դրութեան ընտրուելուն իբր արդարացուցիչ պատճառ ցոյց տրուած է յաջողութիւնը ապահովելու խնդիրը, վասնզի ընտրութիւն ընելու համար Ազգային ժողովներ գումարելու դժուարութիւն կար:

Հետեւաբար կաթողիկոսը աթոռակիցներ առնելով յաջորդութիւնը ապահոված կ՚ըլլար, մինչ շատ դժուար պիտի ըլլար օրինաւոր ձեւով Ազգային ժողով գումարել երբ երկիրը տակնուվրայ էր:

Աթոռակիցներու գոյութիւնը կերպով մըն ալ անհրաժեշտ եղաւ երբ պարսիկները կեղեքել սկսան Էջմիածինը հարկապահանջութիւնով, վասնզի կաթողիկոսներէն մէկը կամ երկուքը նուիրահաւաքութեան կ՚ելլէին եւ միւսները աթոռը կը մնային:

Այսպէս Աթոռը բնաւ անտէր չէր մնար: Հետեւաբար հակառակ իր անպատեհութիւններուն աթոռակիցներու գոյութիւնը իր օգտակարութիւնն ալ ունեցած է:

* * *

1468ին, Գարա-Գոյունլու եւ Ագ-Գոյունլու թուրքմէն իշխանութիւններուն իրարու հետ ձուլուելով իբր պարսկական պետութիւն Ուզուն Հասանի իշխանութեան տակ կազմուեցաւ մեծ պետութիւն մը որ Արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ հիմնուած Օսմանեան պետութեան հետ մաքառիլ պիտի սկսէր, իր կազմութենէն հազիւ քանի մը տարի ետք (1478)։

Այս պայքարը որ երկու իսլամ պետութիւնները իրարու դէմ մղած են, 250 տարի տեւած է, գրեթէ անընդհատ։

Երկու պետութիւններու միջեւ տեւող կռիւը արծարծուած էր նաեւ կրօնական գոյն առնելով վասնզի Օսմանցիք Սիւնի դաւանանքին դրօշակիրը եղան, մասնաւորապէս 1514էն ետք երբ Եգիպտոսի տիրելով խալիֆայութիւնը Սուլթանութեան միացուցին, իսկ Ուզուն Հասան՝ Շիի աղանդի պաշտպան հանդիսացաւ վասնզի պարսիկները անոր կը հետեւէին։

Քաղաքական ատելութեան կցուեցաւ կրօնական ատելութիւնը որով սաստկացան պատերազմները եւ երկու պետութեանց իբր սահմանամերձ երկիր, Հայաստան պատերազմի հետեւանքով ամէնէն սոսկալի աղէտներու ենթարկուեցաւ։

Հայ կաթողիկոսները ողոքելով իսլամ վեհապետները ժողովուրդին կացութիւնը բարւոքելու աշխատած են, ինչպէս Աղթամարի Զաքարիա եւ Ստեփաննոս կաթողիկոսները Ճիհան Շահ ատեն ըրած եւ մասամբ յաջողած էին։

Սակայն ԺԵ. դարուն բոլորովին աննպաստ դարձաւ կացութիւնը Հայոց համար եւ հայերը յուսահատ իրենց ակնարկը ուղղեցին դարձեալ դէպի Եւրոպա քրիստոնեայ աշխարհին, որուն շատ դիմած սակայն որեւէ օգնութիւն չէին ստացած։

Եւրոպայի օգնութիւնը միայն նոր խաչակրութիւններով կարելի էր ստանալ եւ ասիկա միայն Հռոմի պապերը կրնային կազմակերպել իբր Եւրոպայի քրիստոնեաներու կրօնական պետը։

Խաչակրութեան հրաւէրը իշխողներուն՝ պապերը կրնային ընել։

Հետեւաբար պէտք էր Հռոմ դիմել։ Հռոմ անողոք կերպով հնազանդութիւն կը պահանջէր դրական օգուտ մը ընծայելէ առաջ, ինչ որ վարանումի պատճառ է Հայոց համար։

Ասով հանդերձ Հայերը ըրած են դիմումներ կաթոլիկ աշխարհին։

Անդրանիկ այդ դիմումները թերեւս կատարած է Յովհաննէս Է. Աջակիր մականուանեալ կաթողիկոսը (1470-1484) վասնզի զինքը կը գտնենք Եւրոպայի մէջ 1485ին։

Յովհաննէս Է.ի անցեալին եւ գործունէութեան վրայ ոչ մէկ վաւերական տեղեկութիւն ունինք։

Միայն 1474ին Սարգիս կաթողիկոսի աթոռակից ըլլալը գիտենք։ Յետոյ չի գիտցուիր թէ ե՞րբ եւ ինչո՞ւ Էջմիածինէն հեռացած եւ Եւրոպա անցած է եւ ի՞նչ ճամբով հասած է Լեհաստան։

Եթէ նուիրահաւաքութեան համար գացած է Լեհաստան, Էջմիածին ուրիշ նուիրակներ պիտի չղրկէր հոն, մինչ 1484ին հոն կ'երթան երկու նուիրակներ եւ Կամէնից քաղաքին մէջ կը պատահին Յովհաննէս կաթողիկոսի (1484):

Աւելի տեղեկութիւն չկայ Յովհաննէս կաթողիկոսին վրայ:

Միայն կասկած կայ որ ապրած է մինչեւ 1506 եւ ինքն է այդ թուականին ուրիշ եպիսկոպոսի մը (Սարգիս) եւ վարդապետի մը (Դաւիթ) հետ Լեհաստան, Խրիմ, Պոլիս եւ Ամասիա շրջող Յովհաննէս Արքեպիսկոպոսը «Արսլանպէկենց» մականունով եւ տիտղոսուած «Հայրապետ» եւ «Եպիսկոպոս Ազնուական»: Որոնք իբր լրտես ձերբակալուած են եւ 1506 Հոկտ. 17ին Կ. Պոլսոյ մէջ գլխատուած են [իբր] թշնամի Պարսկաստանէն ղրկուած լրտեսներ:

Այս պարագային Յովհաննէս Է. կաթողիկոս պէտք է ենթադրել հրաժարած կաթողիկոսութենէ, որուն սակայն փաստը չունինք:

Միակ փաստը ժամանակին մօտաւորութիւնը եւ լրտես նկատուելու (իբր Պարսկաստանէն եկող) պարագան է:

Գուցէ քրիստոնեայ աշխարհի դիմում մը կատարած ըլլալն ալ յանցանք նկատուած ըլլայ:

Ամէն պարագայի մէջ կարելի չէ Յովհաննէս Է. կաթողիկոսը եւ 1506ին նահատակուած Յովհաննէս Արքեպ. նոյնացնեք թէեւ անհաւանական ալ չէ:

Իր յաջորդին՝ Ստեփաննոս Սալմաստեցիի Եւրոպա ուղեւորութիւնը եւ Եւրոպայէն օգնութիւն խնդրելու նպատակով կատարած ըլլալը որոշ է:

Այս կաթողիկոսը, 1514ին Սուլթան Սելիմ Եավուզի կողմէ Դաւրէժէն Կ. Պոլիս փոխադրուած գերիներու մէջ էր: Ստեփաննոս Կ. Պոլիս ուսում առած էր: Գիտէր լատիներէն այն ատենուան միջազգային լեզուն, որով կրնար յարաբերիլ Հռոմի Պապերուն հետ:

Կ. Պոլիսէն անցած էր Հայաստան եւ հոն Մապուրտայ վանքին մէջ իբր ուսուցիչ աշակերտները հասուցած էր:

Յետոյ 1514ին Աթոռակից կաթողիկոս կ'ըլլայ Գրիգոր Բիւզանդացի եւ իր կարգին իրեն Աթոռակից կ'առնէ Միքայէլ Սեբաստացի կաթողիկոսը որ կը ձգէ նախապատրաստութիւններով:

Անոնց առաջինը եւ գլխաւորը այն ժողովն էր Ստեփաննոս Սալմաստեցի գումարեց ապահովաբար ԳԱՂՏՆԻ, որպէսզի աղերսագիր մը պատրաստուի ազգին մեծերուն կողմէ դիմելու համար Հռոմի Պապին, իբրեւ Եւրոպայի բախտը տնօրինող եւ արտասովոր հեղինակութիւն վայելող կրօնական միապետ մը:

Այդ ժողովին մէջ որոշուած է այդ դիմումը կատարել Ստեփաննոս Սաքմաստեցի կաթողիկոսի միջոցաւ:

Իրենց խնդրանքը ինչպէս կ'երեւի գրաւոր չեն ըրած, վտանգաւոր ըլլալով այս տեսակ գիր մը պատրաստել եւ Եւրոպա տանիլ: Այլ յանձնարարած են որ կաթողիկոս ինքն գրէ եւ ներկայացնէ:

Ստեփաննոս Սալմաստեցի այս ստորագրութեան թուղթով կը մեկնի Եւրոպա եւ ուղղակի կ'երթայ Վենետիկ երկու պատճառով:

Ա.- Վենետիկ ունէր Հայ բաւական ազդեցիկ ու բազմամարդ գաղութ մը:

Բ.- Վենետիկ հասարակապետութիւնը քաղաքական յարաբերութիւններ ունէր Պարսկաստանի իբր զինակից ընդդէմ Օսմանեան պետութեան եւ հետեւաբար թերեւս դեր մը կրնար կատարել ի նպաստ Հայոց:

Կաթողիկոսը Վենետիկէն կը սկսի իր դիմումը, լատիներէն գիրով մը որուն լատիներէն բնագիրը կորսուած է եւ կը մնայ միայն թարգմանութիւնը, որուն վերնագիր դրած է թարգմանը *Աղերսագիր տերանց Հայոց*:

Այդ գիրին բովանդակութիւնը շատ յատկանշական է վասնզի Հայ կաթողիկոսը ցոյց կուտայ կրօնական զիջողութիւն եւ համակերպութիւն քաղաքական ակնկալութեամբ:

Այս գիրը կը սկսի հետեւեալ տողերով.

«Ով Աստուածահիմն եւ Քրիստոսաշէն եւ ի Հոգւոյն սրբոյ պահպանեալ քաղաք Վենետիկ, զոր առնեն եւ բնակին *ուղղափառ* տեարքն Վենետիկք. ով ամենայն քրիստոնէից եւ ամենայն *մոլորելոց* նաւահանգիստ եւ ապահով օթեւան. դու ամենայն քաղաքաց քրիստոնէից հարսն ես եւ ամենայն աշխարհի հաւատարիմ օթարան, եւայլն»: (Մենք քանի մը բառեր ստորագծած ենք ցոյց տալու համար ոգին:)

Այսպէս Վենետիկի համար գովեստներ հիւսելէ ետք կ'ըսէ. «Թէպէտեւ հեղինակութեամբ Առաքելոյն Պետրոսի՝ Հռոմ քաղաքն է ԳԵՐԻՇԽԱՆ, սակայն դու վեհ քաղաքդ Վենետիկ, դու բանալի եւ փականք ես բովանդակ Քրիստոնէութեան...»:

Իսկ կը վերջացնէ սա բառերով. «Մենք խեղճ Հայքս ի մասին Պարսից իներքաց խիստ տառապանաց այլատինից, կու սպասեմք Ձեր գալուն, ինչպէս սուրբ նախահարքն սպասէին փրկչին Քրիստոսի: Գիտեմք, որ իշխանութենէ տէրանց Վենետաց պիտի սկսի մեր փրկութիւնն եւ ազատութիւնն: Կ'ուղարկեմք մեր պատրիարքը Ստեփաննոս, շատ պատճառաց համար, առ մեծապայծառ տէրութիւն ձեր, որ յարգութիւն ընծայէ ձեզ, եւ մեր կողմանէ յանձնէ զմեզ առ ձեզ, եւ յետոյ շնորհք ընէք իրեն որ կարենայ երթալ եւ համբուրել զոտն ամենասրբազան Պապին»:

Այս աղերսագիրին ինչ պատասխան առնուած ըլլալը յայտնի չէ, բայց հաւանական է որ կաթողիկոսին օգնած են որ ըստ խնդրանքին Հռոմ երթայ:

Ստեփաննոս Սալմաստեցի հոն կը փութայ 1549ին եւ հոն կը մնայ ամբողջ 1550 տարին:

Իրեն կ'օգնէ Հռոմի մէջ Պետրոս անուն Հալպէշ կրօնաւոր մը [որ] մեծ դեր կը կատարէր զինքն ներկայացնելու համար Վատիկանի մէջ: Կաթողիկոսը ի վարձատրութիւն անոր մատուցած ծառայութիւններուն զայն կը ձեռնադրէ

Եպիսկոպոս (1550 Սեպտեմբեր 6) եւ Հռոմի մէջ իր ներկայացուցիչը կը նշանակէ:

Վատիկան Հայոց կաթողիկոսի խնդիրով զբաղելու համար Կարտինալ մը կը նշանակէ: Սակայն առանց որեւէ արդիւնք ձեռք բերելու 1450-1451 տարիները Հռոմի մէջ աշխատելէն ետք կը մեկնի Հռոմէն Գերմանիոյ Կարոլոս կայսեր դիմելու համար:

Գացած է թէ չէ յայտնի չէ, վասնզի որեւէ հետք չկայ:

Միայն 1452 Յունուար 14ին Լեմպէրկի մէջ մեռած եւ հոն թաղուած է:

Իրեն կը յաջորդէ Ստեփաննոս Ջ. Առընչեցի (1552-1575) որ թերեւս Սալմաստեցիի ուղեկից յիշուած Ստեփաննոս եպիսկոպոսն է:

Հաւանօրէն Լեմպէրկէն ճամբան շարունակած է եւ Էջմիածին գացած է «Հայոց Տէրանց» բացատրելու համար հանգուցեալ կաթողիկոսին դիմումին համար: Եւ թերեւս անոնց հրահանգով կաթողիկոս կ'օծուի եւ կը դառնայ Եւրոպա իր նախորդին դիմումները շարունակելու համար, մինչ միւս կողմէն Սալմաստեցիի աթոռակից Միքայէլ կաթողիկոս Սեբաստացի կը մեկնի իր ծննդավայրը հոն նոյն նպատակով աշխատանք մը կատարելու համար:

## Դ. ԴԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ստեփաննոս Առընչեցիի եւ իր յաջորդին օրով, Հայաստանի կացութիւնը նոյն անբաղձալի վիճակը կը ներկայացնէր: Կաթողիկոսներու ձեռնարկները դէպի Եւրոպա ու մանաւանդ Հռոմ՝ արդիւնք մը չէր տուած, վասնզի Եւրոպացիք միշտ պայման կը դնէին որ նախ հայերը կաթոլիկ կրօնքը ընդունին եւ յետոյ իրենք մտածեն օգնութիւն հասցնելու ձեւը Արեւելքի քրիստոնեաներուն եւ հայերուն:

Միքայէլ Սեբաստացի որ Ստեփաննոս Սալմաստեցիի եւ Ստեփաննոս Առընչեցիի աթոռակից եղած էր, ու վերջինին մահէն ետք՝ յաջորդած էր, մօտէն հետեւած է այս երկու Ստեփաննոսներու ձեռնարկներուն: Միքայէլ որ դիւանագէտ եւ ուսումնական անձ մըն էր, ինքն ալ կը ձեռնարկէ դէպի Եւրոպա դիմումի մը: Բայց ան կը մտածէ ուրիշ ձեւ մը: Ան կ՚անցնի իր ծննդավայրը՝ Սեբաստիա, եւ հոն գաղտնի ժողով մը գումարել կուտայ եւ որոշում կ՚առնէ պատգամաւորութիւն մը ղրկելու դէպի Եւրոպա, աշխարհականի մը գլխաւորութեամբ: Ասոր մէջ դիւանագիտական հաշիւ մը կար:

Յայտնի էր որ երբ կաթողիկոսներ Եւրոպական Տէրութեանց դիմումներ կ՚ընէին, պապերու առաջին պայմանը կ՚ըլլար կաթոլիկութիւնը ընդունիլ: Կաթողիկոսները ինքնագլուխ՝ կը վարանէին, հետեւաբար ապարդիւն կը դառնար իրենց դիմումը:

Միքայէլ Կաթողիկոսի ընտրած պատգամաւորութիւնը իբր աշխարհական, իրաւասու չէր այդ տեսակ քայլ մը առնելու, եթէ պահանջուէր իսկ:

Պատգամաւոր կ՚ընտրուի Աբգար Եւդոկիացի անձը, որ հանրածանօթ է Աբգար Դպիր անունով: Անոր տրուած ԴՊԻՐ մակդիրէն կը հասկցուի թէ ան ուսումնական անձ մըն էր:

Պատգամաւորութեան հեղինակութիւն մը տալու համար վկայականով մը Աբգարը Եւրոպայի կը ներկայացնեն որպէս արքայական ցեղէ սերած անձնաւորութիւն մը: Սեբաստիոյ ժողովին մէջ կը գրեն վկայական մը, որուն մէջ Աբգարի արքայական ցեղէն ըլլալը կը փաստուէր, իբր թէ Հայկ նահապետի ցեղէն: Այս վկայականին տակ կը ստորագրեն ոչ միայն ժողովին ներկայ եկեղեցական եւ աշխարհականներ, այլ նաեւ այլ տեղեր գտնուող եկեղեցականներ: Ստորագրութեանց շարքին կ՚երեւի Երուսաղէմի հայոց օրուայ պատրիարքի ստորագրութիւնն ալ: Բնական է որ Երուսաղէմի Պատրիարքը Սեբաստիոյ ժողովին չէ մասնակցած, յետոյ է որ ան ստորագրած է: Ստորագրութիւնները բազմաթիւ ու այլազան եղած են պարզապէս Եւրոպացիները տպաւորելու համար:

Աբգարի արքայազն ըլլալը չփաստուիր: Տրամաբանական է որ այս

վկայականը գրուած է պարզապէս Աբգարի դիրքը բարձրացնելու յաչս Եւրոպական իշխանութեանց։ Արդէն այս վկայականը աւելի հանրագրութեան ձեւը ունէր, քան թէ վկայականի մը։

Աբգար ճամբայ ելած ատեն զգուշութիւններ ձեռք կ՚առնէ։ Նախ Պապին մատուցուելիք թուղթին հայերէնը հետը կ՚առնէ, Եւրոպա անցնելէ ետք լատինէրէնի թարգմանելու մտադրութեամբ։ Այս զգուշութիւնը եղած է պարզապէս թուրքերու կասկած չներշնչելու համար։ Ան իր հետ կ՚առնէ իր որդին Սուլթանշահ եւ քահանայ մը, անունը Աղեքսանդր։

Պատգամաւորները Հռոմ երթալէ առաջ կ՚անցնին Վենետիկ, ուր կը մնան բաւական երկար։ Հռոմի մէջ Պապը սիրալիր ընդունելութիւն կ՚ընէ ու հանդիսութիւններ կը սարքէ երբ պատգամաւորները կը հասնին հոն։

Նախքան բանակցութեանց սկսիլը Պապը ուզեց տեղեկանալ հայոց դաւանութեան Աբգարէն գրաւոր։ Աբգար, որ դիւանագէտ անձ մըն էր կը պատրաստէ հայոց դաւանութեան մասին տեղեկագիր մը, որուն մէջ այնպէս մը կը ներկայացնէ թէ Հայոց Եկեղեցին Կաթոլիկ Եկեղեցիին մօտիկ է, թէ երկու եկեղեցիներն ալ Տիեզերական երեք ժողովներն ալ կ՚ընդունին, եւայլն։

Յայտնի է որ երկու եկեղեցիներն ալ Տիեզերական երեք ժողովներն ալ կ՚ընդունին եւ անհամաձայնութիւնը չորրորդ Տիեզերական ժողովէն է որ կը սկսի։ Աբգար իր թուղթին մէջ այս ժողովին խօսքը չըներ։ Պապը՝ Պիոս Դ., չանդրադառնալ կը ձեւացնէ այս կէտը եւ բանակցութիւնները կը շարունակէ։

Դժբախտաբար Պիոս Դ. կը վախճանի, եւ իր յաջորդը, որ հաւատաքննիչ եկեղեցականներէն էր ու մոլեռանդ կաթոլիկ մը, խնդիր կը հանէ։ Ան խոստացաւ Աբգարի հետ կաթոլիկ եպիսկոպոս մը ղրկել Էջմիածին, Հայոց Կաթողիկոսին հետ բանակցելու համար։ Եւ որպէսզի Աբգար լրջօրէն զբաղուի, անոր տղան՝ Սուլթանշահը Հռոմ վար դրաւ, տեսակ մը պատանդ։

Պիոս Ե. Պապն ալ շուտ կը վախճանի ու անոր յաջորդը պայման կը դնէ որ Էջմիածնայ Կաթողիկոսը գայ Հռոմ բանակցելու։

Հռոմի մէջ Աբգար կը տեղեկանայ որ թուրք կառավարութեան ականջը հասած է իր պատգամաւորութեան ձեռնարկը։ Ան կ՚անցնի Վենետիկ, իրեն ընկերացող կաթոլիկ եպիսկոպոսը Կիպրոս կը ղրկէ, հոն իրեն սպասելու համար, որպէսզի միասին Կ. Պոլիս անցնին։ Յետոյ իր պատգամաւորութեան ձեւը կը փոխէ. իբր թէ ան Եւրոպա գացած է տպագրութեան արհեստը սորվելու եւ Թուրքիա հետը մամուլ բերելու համար։

Նախ Հռոմի մէջ Սաղմոս մը կը տպէ։ Յետոյ Վենետիկ նոյնպէս քանի մը գիրքեր կը հրատարակէ եւ մամուլ մը, հայերէն մայր գիրերով ճամբայ կ՚ելլէ դէպի Թուրքիա։ Մինչ այդ Աբգարի ընկերացող կաթոլիկ եպիսկոպոսը որ Կիպրոս իրեն պիտի սպասէր՝ կը վախճանի, բան մը որ նպաստաւոր էր Աբգարի համար։

Թուրքիոյ մէջ կառավարութիւնը համոզուեցաւ Աբգարի իբր տպագրիչ ճամ-

բորդութեան համար ու հանգիստ ձգեց զինք։ Ան Պոլսոյ մէջ ալ գիրքեր կը հրատարակէ։ Հոն իր առաջին տպագրածը կ՚ըլլայ *Այբբենարան* մը, ժողովուրդին մէջ ուսումը տարածելու մտադրութեամբ։

1569էն ետք Աբգարի հետքը կը կորսուի ու այլեւս իր անունին չենք հանդիպիր։ Ի՞նչ եղած է, յայտնի չէ։ Պոլիս մեռա՞ծ է թէ Էջմիածին անցած է՝ Միքայէլ Սեբաստացիին ներկայացնելու իր պատգամաւորութեան արդիւնքը։

Բայց իր զաւակը Սուլթանշահ մնաց Հռոմ, ուր ուսում ստանալէ ետք Հռոմի Հայոց վերատեսուչ եղած էր։ Իրեն տրուած էր նաեւ պատմական անուն մը՝ Մարկոս Անտոնիոս, իբր թէ ան արքայական սերունդէ մը սերած ըլլար։

1574ին կը վախճանի Աբգարի պատգամաւորութիւնը հովանաւորողը՝ Միքայէլ Սեբաստացին։ Անոր կը յաջորդէ Թադէոս Կաթողիկոս (1574-76), որ իր նախորդին պէս, Էջմիածնայ Աթոռը աթոռակիցներու ձգելով կ՚անցնի Եւրոպա։ Թէ ի՞նչ նպատակով ճամբայ ելած է՝ անծանօթ է մեզի։ Կամ հասկցած է թէ իր ուղեւորութիւնը ապարդիւն է կամ զգուշացած է կաթոլիկութեան պահանջէն։ Միայն նկատելի է որ, մինչեւ Վենետիկ երթալէ ետք՝ յանկարծ ետ կը դառնայ, առանց Հռոմ հանդիպելու։

Այս օրերուն Հռոմ տագնապի մէջ էր։ Լուտերի յարուցած վերանորոգութեան շարժման հետեւանօք, Կաթոլիկ եկեղեցւոյ այս պառակտումը մեծ տագնապ մըն էր Հռոմի համար, որ մեծ թիւով հետեւողներ կը կորսնցնէր։

Հռոմ ստիպուած իր քաղաքականութիւնը կը փոխէ Արեւելքի քրիստոնեաներուն հանդէպ։ Հռոմ կը ձեռնարկէ Արեւելքի Հայ եւ Ասորի եկեղեցիներուն մօտենալ ու զանոնք կաթոլիկացնելով ջանալ հեռացածներուն տեղը լեցնել։

Գրիգոր 13րդ Պապը, որ ուսումնական անձ մըն էր կը ձեռնարկէ յարաբերութիւններ ստեղծել Հռոմայ եւ Էջմիածնայ միջեւ, սակայն անկարելի կ՚ըլլայ ձեռնարկը յաջողցնել։ Պապը Արեւելք կը ղրկէ Լէոնարտօ անուն կաթոլիկ եպիսկոպոս մը, յանձնարարելով որ հայ եւ ասորի եկեղեցականներուն հետ բանակցի եւ Հռոմ տեղեկագրէ արդիւնքը, ինչպէս նաեւ ներկայացնէ այս եկեղեցիներուն վիճակը։ Լէոնարտօ, որ ասորի եկեղեցին ուսումնասիրելու համար Կիլիկիոյ կողմերը եկած էր, տեսնելով որ դժուար [է] մինչեւ Էջմիածին երթալը, երկիրը անապահով ըլլալուն համար կը բանակցի Կիլիկիոյ Կաթողիկոսին հետ, Սիսի մէջ։ Օրուան Կաթողիկոսն էր Խաչատուր Ջէյթունցի (1540-1584) որ շատ ծեր էր եւ իբրեւ լիազօր փոխանորդ նշանակուած էր Ազարիա Ջուղայեցին (1584-1601), որ ետքը իրեն յաջորդած է։ Լէոնարտօ կը բանակցի Ազարիայի հետ։

Լէոնարտօ Եպիսկոպոսը որ արդարամիտ անձ մըն էր, կը պատրաստէ երկու տեղեկագիրները եւ կ՚անցնի Հռոմ, անձնապէս տեսնուելու համար Պապին հետ։ Անոր հայոց կացութեան մասին տուած տեղեկագիրը շատ շահեկան մանրամասնութիւններ կուտայ, որոնք անկողմնակալ են։

Ազարիա Լէոնարտոյի կուտայ գրութիւն մը ուղղուած Պապին, որ սապէս կը

ներկայացնէ հայոց վիճակը.

«Եմք իբրեւ զմի այգի առանց պարսպի եւ պահնորդի, ցրուեալք աստ եւ անդ եւ եմք զերդ ոչխար մի իմէջ գայլոց եւ որպէս զգառինք իմէջ առիւծուց եւ ամենեքին եմք գերի անողորմ տէրանց, որք վասն մեղաց մերոց ամենայն օր տանջեն եւ չարչարեն զմեզ սպանութեամբ եւ ոչ կշտանան բնաւ, զի տնանկ եւ աչքարք եմք եւ ոչ կարիմք շարժել քայլ մի առանց երկիւղի եւ մեծ փորձանաց»:

Ազարիա կ՚որոշէ Հռոմ ղրկել Յովհաննէս Այնթապցին, ընկերակցութեամբ Գրիգոր անուն սարկաւագի մը, եւ քանի մը աշակերտներու: Ազարիա Հայոց փրկութիւնը կը նկատէ ուսում տարածել իր ազգակիցներուն մէջ: Ան Յովհաննէս Այնթապցիի միջոցաւ Հռոմի կ՚առաջարկէ.

Ա.- Գրիգոր Սարկաւագի ընկերացող աշակերտներուն Հռոմի մէջ ուսում տալ, քրիստոնէութիւն սորվեցնել, որպէսզի ապագային անոնք վերադառնան հայրենիք ու գաւառները ուսում տարածեն:

Բ.- Գրիգոր Պապին Նոր Տոմարի դրութիւնը հայոց մէջ ալ մտցնելու համար կը խոստանայ կազմել ուսումնական եկեղեցականներէ ժողով մը որ պիտի քննէր տոմարական այս նոր դրութիւնը:

Գ.- Հռոմի մէջ հայերէն Աստուածաշունչ մը տպագրել, որպէսզի կարելի ըլլայ գաւառները ցրուել ու այսպէսով քրիստոնէութիւնը աւելի ամրապնդել հայոց մէջ:

Ազարիա Կաթողիկոս Ջուղայեցի իր այս ձեռնարկներով մեզի կը ներկայանայ որպէս նոր Մեսրոպ Մաշտոց մը, Եկեղեցին վերականգնելու իսկական ձեռնարկ մը, որ դժբախտաբար արդիւնք մը չունենար:

Ազարիա Կաթողիկոս Ջուղայեցիով կը վերջանայ հայ կաթողիկոսներու ձեռնարկները դէպի Եւրոպա:

## Ե. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Երբ վերակազմեալ Պարսկաստանը Ուզուն Հասանի (1467-1478) վեհապետութեան տակ մեծ պետութիւն մը կազմեց, նոյն ատեն թուրքերն ալ Արեւմտեան Փոքր Ասիոյ իրենց անշուք իշխանութիւնը ընդարձակած եւ մինչեւ Եփրատ տարածուած էին։

Ինչպէս տեսնուեցաւ մահմետական այս պետութիւնները արդէն իրարու դէմ պատերազմիլ սկսած էին 15րդ դարու վերջերը, եւ այս պայքարը շարունակուած էր ամբողջ 16րդ դարուն տեւողութեան։ Այս ճակատագրական պատերազմներու թատերավայրը կը կազմէր Հայաստան։ Պարսիկները կուգային կը գրաւէին եւ կ՚աւերէին եւ կը մեկնէին։ Քիչ ետքը Թուրքերը կուգային պարսիկներէն գրաւելու ինչ որ կորսնցուցած էին։ Ու այսպէս, Հայաստան կ՚ըլլար ոտքի կոխան, որուն պատճառաւ անտանելի վիճակ մը կը ստեղծուէր հայոց համար։

Ուզուն Հասանի տիրապետութեան օրով, Պարսկաստանի հայոց վիճակը համեմատաբար աւելի լաւ էր քան թրքական Հայաստանինը։ Արդէն հայոց մեծամասնութիւնը պարսկական տիրապետութեան տակ կը գտնուէր։ Սակայն Ուզուն Հասանի մահէն ետք երբ տիրող արքայական տունը փոխուեցաւ, աննպաստ վիճակ մը ստեղծուեցաւ հայոց համար, հակառակ անոր որ նոր տիրապետողը հայոց երախտապարտ պէտք է ըլլար։

Պարսկաստանի նոր իշխողները կը կոչուէին ՍԷՖԵԱՆՔ։

14րդ դարու կէսերուն սրբութեան համբաւ շահած էր Շէյխ-Սէյֆ էդ-Դին անուն ճգնաւորական կեանք վարող անձ մը, որ սրբակեցութեան աշխարհատեցութեան քողին տակ կը քարոզէր ժողովուրդին։ Ազգով թուրք՝ ինքզինքը որպէս Արաբ կը ներկայացնէր եւ յորդորելով չհնազանդիլ թուրքերուն կ՚աշխատէր ըմբոստութիւն յարուցանել երկրին մէջ։ Կրօնական երեւոյթի տակ քաղաքական քարոզութիւն ընելով։

Լէնկթիմուր ալ խաբուելով այս մարդուն խաբեպատիր կրօնամոլ քարոզչութիւններէն՝ անոր շնորհած էր 16.000 գերիներ, որոնք հետագային Սէյֆ Էտ Տինի ձեռքին տակ պիտի կազմակերպուէին եւ պիտի կազմէին բանակ մը։ Կրօնամոլ շէյխը դարձաւ եւ եղաւ աշխարհական իշխան-ցեղապետ մը։ Այս ուժը եղաւ զօրաւոր ազդակ մը Շիիականութեան, ընդդէմ Սիւննի դաւանութեան։

Ուզուն Հասանի օրով Պարսկաստանի մէջ կրօնական ու ցեղային միութիւն մը չկար։ Տարբեր տարբեր կրօնքներ ու աղանդներ, ինչպէս նաեւ տարբեր տարբեր ցեղախումբեր կ՚ապրէին նոյն երկրին մէջ, իրարմէ անջատ։ Հոն արդէն հինէն գոյութիւն ունէր աւատապետական հին կարգեր։ Ուզուն Հասանի օրով ու հետագային, գոյութիւն ունէին ԽԱՆութիւնները ինչպէս Թուրքիոյ մէջ կազմակերպուիլ

սկսած էր ՏԷՐԷՊԷՅԻութիւնները։

Սէյֆեան այս իշխանութեան կեդրոնն էր Արտապիլ քաղաքը, որուն շէյխերէն մին՝ Հայտար Ալի, ամուսնացաւ Ուզուն Հասանի Տեսբինա անուն յոյն կնոջ աղջկան՝ Մարթայի հետ։

Մարթա եւ Հայտար թունաւորեցին Ուզուն Հասանի որդին Եազուպը, որ հասկնալով թէ թունաւորուած է ու գիտնալով ոճրագործները՝ անոնց ալ խմցնել տուաւ նոյն թոյնէն, որով երեքն ալ մեռան նոյն ատեն (1487)։

Այսպէսով երկրին մէջ ստեղծուեցաւ անիշխանութիւն մը որ տեւեց մօտաւորապէս տասը տարի։

Այս միջոցին Եազուպի 6-7 տարեկան որդին Իսմայիլը շիիակրօնները կը փախցնեն Աղթամար ու Հայոց Կաթողիկոսին քով կը պահեն, մինչեւ որ ան կը մեծնայ եւ 1498ին 16.000 հայ զինուորներէ բաղկացած բանակով մը կուգայ ու կը տիրէ երկրին եւ 1499ին ՇԱՀ կը հռչակուի Դաւրէժի մէջ։

Այսպէսով Շէյխ Իսմայիլը կը դառնայ ՇԱՀ Իսմայիլ ու տէր ընդարձակ Պարսկաստանի։ Ան կը նկատուէր ՇԻԻ դաւանանքին կրօնապետ։

* * *

16րդ դարու սկիզբը Թուրքիոյ մէջ կ'իշխէր Սէլիմ Առաջին Եավուզ, որ մոլեռանդ ՍԻՒՆՆԻ թուրք էր։ Երկու երկիրներու միջեւ պատերազմը շարունակուեցաւ։ 1514ին ՊԱԼՏԸՐԱՇԻ ճակատամարտին մէջ Շահ Իսմայիլ յաղթուեցաւ, ջախջախուեցաւ Պարսկական բանակը եւ նոյնիսկ Դաւրէժը թուրքերէն գրաւուեցաւ։

Սէլիմ 1520ին Իսմայիլ 1525ին մեռան, սակայն իրենց սկսած ահարկու պայքարը շարունակուեցաւ, հայոց համար շատ ծանր հետեւանքներով։

Այս կռիւները այնքան թշուառացուցին հայերը որ ԺԶ. դարուն անոնք փրկութեան ելք փնտռեցին Եւրոպայի միջոցաւ։

Ահա այս պայմաններուն մէջ է որ հայ մեծամեծները եւ կղերը 1548ին Եւրոպա ղրկեցին իրենց կաթողիկոսը Ստեփաննոս Սալմաստեցին, եւ անոր մահէն ետքն ալ միշտ Եւրոպայի դիմեցին, ինչպէս տեսնուեցաւ։

Այս պատերազմներու ընթացքին երկու կողմերն ալ կը գործադրէին հնօրեայ այն ձեւը, որ գոյութիւն ունեցած էր անցեալին։ Յաղթական կողմը, գիտնալով թէ քիչ ժամանակ ետք գրաւած հողամասերը պիտի կորսնցնէ, իր հետ կը տանէր երկրին բնակչութեան կարեւոր մասը։ Այսպէս գոյութիւն ունէր գաղթականութեան բռնի ձեւ մը։ Այս տեսակէտով ամենէն անգութը եղաւ Շահ Աբբաս Ա. Պարսկաստանի թագաւորը, որ ամբողջ Այրարատեան դաշտը գրաւելէ ետք՝ բռնի տեղափոխեց նոյն հողամասին վրայ բնակող հայութիւնը։ Հապճէպով դէպի Արաքսի ջուրերը քշուած ժողովուրդէն հազարաւորներ մեռան։ Նոյնպէս, Շահ

Աբբաս գիտնալով թէ թուրքերը իր ետեւէն պիտի հասնին ամբողջ գիւղերը այրել ու կործանել տուաւ, որպէսզի թուրքերը երբ գան, պաշար չգտնեն, ու ստիպուած վերադառնան:

Այս ժամանակամիջոցին, ոչ միայն հայերը դիմումներ ըրին դէպի Եւրոպա, այլ նաեւ Պարսիկները, հայերու միջոցաւ, որովհետեւ հայոց մէջ կային լատինագէտ անձեր, ինչպէս նաեւ հարուստ վաճառականներ՝ հաստատուած Իտալիա կամ այլուր:

Պարսիկները տեսնելով իրենց տկարութիւնը, մօտեցան Եւրոպայի այն երկիրներուն, որոնք հակառակ էին թուրքերուն: Հայերը կը թուի թէ ասկէ քաջալերուած, իրենք ալ նոյն դիմումը ըրած են:

Դժբախտաբար Եւրոպայի իրենց ըրած դիմումներուն մէջ թէ պարսիկները եւ թէ հայերը չարաչար յուսախաբ եղած են, որովհետեւ անկէ օժանդակութիւն չեն գտած:

Ֆրանսա թուրքերուն քծնիլ սկսաւ առեւտրական շահախնդրութիւններով: Միջերկրական ծովու վրայ առեւտուրի մեծ կեդրոնը Մարսիլիոյ վաճառականները եւ Աղեքսանդրիա հաստատուած ֆրանսացի վաճառականներ էին, որոնք Սուլթան Սէլիմ Եավուզէն արտօնութիւն խնդրեցին իրենց առեւտուրը ազատօրէն շարունակելու համար:

Ասիկա առաջին քայլն էր դէպի առեւտրական դաշինք, որ ճամբան պիտի բանար դէպի քաղաքական դաշինքին:

Ֆրանսայի Ֆրանսուա Ա. թագաւորը կ'ուզէր Գերմանիոյ կայսր ընտրուիլ, միացնելու համար ամբողջ Արեւմտեան Եւրոպան եւ մեծ խաչակրութեամբ մը թուրքերը ընկճելու համար: Սակայն Ֆրանսուա Գերմանիոյ կայսր չընտրուեցաւ, այլ Շառլ Ե. որ պատճառ եղաւ որ երկու երկիրները իրարու դէմ պատերազմին: Ֆրանսուա չարաչար պարտուեցաւ ու գերի ինկաւ: Ան, իր մօր միջոցաւ դիմեց Սուլթան Սիւլէյմանի, խնդրելով որ զինք գերութենէ ազատէ:

Ահաւասիկ հատուած մը այն նամակէն զոր Ֆրանսուա գրած է Սուլթանին.

«Մենք կը խնդրենք ու կը փափաքինք, որ աշխարհի մեծ կայսրը մեզի շնորհէ ետ մղել այս մեծամիտը (այսինքն Շառլը) եւ անկէ վերջ ըլլանք մեծ կայսեր (Սուլթանին) պարտական»:

Սուլթան Սիւլէյմանի պատասխան նամակը հետաքրքրական գրութիւն մըն է, ուր ան ինքզինքին կուտայ տիտղոսներ, եւ աշխարհի տիրակալի ձեւ մը.

«Մարգարէական երկինքի արեգակ, առաքելութեան համաստեղութեան աստղ, մարգարէներու խումբի գլխաւոր ընտրեալներու գունդին ուղեցոյց»:

Ան ինքզինքը կը կոչէ. «Ես որ եմ Սուլթաններու Սուլթան, վեհապետներու վեհապետ, ամբողջ աշխարհի միապետներու թագեր բաժնող, Աստուծոյ ստուեր՝ երկրի վրայ, սուլթան եւ փատիշահ, Սպիտակ ծովու, Սեւ ծովու, Ռումելիի, Անատոլուի, Գասթէմունի, Ռումի երկիրներու, զուրգատրի, Տիարպէքիրի,

Քիւրտիստանի, Ատրպատականի, Պարսկաստանի, Դամասկոսի, Հալէպի, Գահիրէի, Մէքքէի, Մէտինէի, Երուսաղէմի, Ամբողջ Արաբիոյ, Եմէնի եւ շատ կողմերու» տէր ու տիրականը:

Իսկ Ֆրանսուան կ՚անուանէ միայն «ՖՐԱՆՍԱ ԵՐԿՐԻՆ ԹԱԳԱՒՈՐ», Ֆրանսուայի գերութեան ակնարկելով կ՚ըսէ, թէ կրնայ պատահիլ որ թագաւորներ գերի իյնան...: Ան մասնաւոր խոստում մը չըներ Ֆրանսուան ազատելու, բայց քիչ ժամանակ ետք կը յարձակի Աւստրիոյ եւ Հունգարիոյ վրայ:

Երբ Եւրոպայի մէջ տարածուեցաւ այն լուրը թէ Ֆրանսա եւ Թուրքիա միացած են, մեծ յուզում յառաջ եկաւ: Ֆրանսային թշնամի Շառլ Ե. տեսնելով ստեղծուած կացութիւնը, առաջարկեց համաձայնիլ Ֆրանսայի հետ ու միասնաբար պատերազմիլ Թուրքիոյ դէմ: Սակայն, Ֆրանսա, իր առեւտրական շահերը նկատի ունենալով մերժեց այս առաջարկը ու ալ աւելի մօտեցաւ Թուրքիոյ: 1535ին կնքուեցաւ գաղտնի զինակցութեան դաշինք մը այս երկու երկիրներուն միջեւ, թէ պաշտպանողական եւ թէ յարձակողական:

Բայց աւելի կարեւոր էր այն դաշնագրութիւնը, որով Ֆրանսա ձեռք կը բերէր մասնաւոր առանձնաշնորհումներ (քաբիթիւլասիոն), որոնք մեծ առաւելութիւններ կուտային Ֆրանսայի:

Այս դաշնագրով, երկու պետութեան հպատակները ազատութիւն կը ստանային նաւարկելու, ճամբորդելու, գնելու եւ վաճառելու, բնակութիւն հաստատելու, սեփականութիւն ունենալու, դաշնակիցներու պատկանող երկիրներու մէջ, եւայլն:

Ֆրանսա Կ. Պոլսոյ մէջ պիտի ունենար դեսպան մը իսկ կարեւոր նահանգներու մէջ՝ հիւպատոսներ: Ֆրանսական հպատակները պիտի դատուէին իրենց հիւպատոսի դատարանին մէջ: Իսկ ֆրանսացիին ու թուրքին միջեւ պարզ յանցանքներ եւ վէճեր թուրք դատարաններու մէջ պիտի քննուէին հիւպատոսի թարգմանին ներկայութեան:

Սակայն, Ֆրանսա, Եւրոպական այլ տէրութիւններուն առջեւ ամօթով չմնալու համար, ինչպէս նաեւ իր անձնական խիղճը հանդարտեցնելու համար, այդ ֆրանք եւ թուրք դաշինքին մէջ մտցուց տրամադրութիւն մը, որով Ֆրանսա՝ Պաղեստինի Ս. Տեղեաց եւ Թուրքիոյ մէջ ապրող կաթոլիկ քրիստոնեաներուն պաշտպան մը պիտի ըլլար:

Ֆրանսա առեւտրական եւ քաղաքական այս բացառիկ առանձնաշնորհումներէն օգտուեցաւ: Ոչ նուազ կարեւոր էր կաթոլիկներու պաշտպանութիւնը եւ հովանաւորութիւնը, ինչ որ պատճառ եղաւ հետզհետէ ֆրանսական ազդեցութեան զօրացման, Արեւելքի մէջ:

Ֆրանսա կրօնական մարզի մէջ կը գործէր Արեւելքի քրիստոնեաներուն մէջ: Ան կը ղրկէր միսիոնարներ, կը բանար դպրոցներ: Անոնք գործիքներ էին քաղաքական շահերու եւ ազդեցութեան:

Ժամանակի ընթացքին Ռուսիա ալ հետեւեցաւ Ֆրանսայի օրինակին: Ան ստացաւ ՕՐԹՈՏՈՔՍ ՅՈՒՆԱԴԱՒԱՆՈՒԹԵԱՆ հովանաւորութիւնը: Իսկ ԺԹ. դարուն, երբ ԲՈՂՈՔԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ ալ մուտք գործեց Թուրքիա, Անգլիա ներկայացաւ բողոքականութեան պաշտպան:

Այսպէս ստեղծուեցան ԵՒՐՈՊԱԿԱՆ ՇԱՀԵՐ Թուրքիոյ մէջ: Եւրոպացիք հաշտուեցան Թուրքիոյ հետ:

Ասով հանդերձ, Արեւելեան խնդիրը միշտ գոյութիւն ունեցաւ, պարզապէս շահագործութեան պատրուակ մը ստեղծելու համար:

Սակայն, միւս կողմէ Թուրքիոյ մէջ Եւրոպացիներու ստացած առանձնաշնորհումները պատճառ եղան Օսմանեան Կայսրութեան անկման, եւ միեւնոյն ժամանակ քաջալերեցին եւ յուսադրեցին հպատակ ժողովուրդները Օսմանեան լուծը թօթափել ջանալու:

## Զ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԺԵ.-ԺԶ. ԴԱՐԵՐՈՒ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐՈՒ ՀԵՏՔԵՐԸ ՊԱՐՍԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԿՈՎԿԱՍԻ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ԺԴ. եւ ԺԵ. դարերու ընթացքին կաթոլիկ կրօնական քարոզիչներ թափանցած էին Հայաստան եւ Հարաւային Կովկասի առեւտրական ուղիներուն վրայ գտնուող վայրերը, կրօնականին զուգընթաց կատարելով քաղաքական աշխատանք։

Նոյնիսկ 1439ին Կաթոլիկ եկեղեցիին Ֆիորենցայի մէջ գումարած կրօնական մեծ ժողովը եկեղեցիներու միութեան համար քաղաքական նպատակներ ունէր։ Բիւզանդական կայսրութիւնը իր հոգեվարքին մէջ էր եւ Օրթոտոքս եկեղեցիի պետերը նոյնիսկ Բիւզանդիոնի կայսրերու ճնշման տակ տրամադիր էին զիջումներ ընել, պայմանով որ Եւրոպայի Քրիստոնեաները օգնէին իրենց։

Պապերը այս նեղ վայրկեանը կ'ուզէին շահագործել միութեան հարկադրելու Օրթոտոքս եկեղեցին։ Այս միութեան դէմ էին Օրթոտոքս եկեղեցիին մոլեռանդ հետեւողները, որոնք իսլամական տիրապետութեան ենթարկուիլ նախամեծար կը համարէին քան թէ Պապերուն հնազանդիլ։

Հետեւաբար Ֆիորենցայի ժողովը, որուն այնքան մեծ կարեւորութիւն տրուած է, պապական եկեղեցիին մեծ շահ մը չէ բերած, վասնզի եթէ քաղաքական հաշիւներով զիջումներ ալ եղած են, անոնք բոլորովին մոռցուած են, երբ 1453ին – 14 տարի այս ժողովէն ետք – Կ. Պոլիսը գրաւուած է թուրքերէն, առանց ակնկալուած օգնութիւնը հասած ըլլալու։

Ֆիորենցայի ժողովին մասնակցած էին յոյներէ զատ հայերը, որոնց պատուիրակներն էին Ճենովական տիրապետութեան տակ գտնուող Ղրիմի Կաֆա (ՔէՖէ Թէոտոսեայ) քաղաքին հայոց եպիսկոպոսը, որ, Սիս մտնող հայոց Կաթողիկոսը պիտի ներկայացնէր եւ Կ. Պոլսոյ հայոց հոգեւոր պետը՝ Յովակիմ Եպիսկոպոս (ապագայ Կ. Պոլսոյ առաջին Պատրիարքը)։

Հայ պատուիրակները այցելեցին Կ. Պոլիս Յովհաննէս Պալիոլոկ Կայսեր որ օգնութիւն եւ պաշտպանութիւն խոստացաւ հայերուն, եթէ եկեղեցիներու միութիւնը իրականանար։

Կաֆայի Ճենովայի կառավարիչները սակայն, արծարծուած պահելու համար օգնութեան յոյսը հայոց մէջ, Սիս մտնող Կոստանդին Կաթողիկոսը հրաւիրեցին իր աթոռը փոխադրել Կաֆա, ուր հայերուն «ոչինչ պիտի պակսի», եւ ուր հայ ժողովուրդը, անհաւատ տէրերէն ազատագրուած, պիտի ապրի հանգիստ եւ ապահով։

Նոյնիմաստ նամակ մըն ալ գրեցին Ճենովացիները Գրիգոր Մուսաբէկեան Կաթողիկոսին, երբ անիկա Ամենայն Հայոց Կաթողիկոսի հանգամանքը կորսնցուցած էր աթոռը Սիսէն Էջմիածին փոխադրած ըլլալով:

Եկեղեցիներու միութեան գաղափարը թէ հայերը եւ թէ յոյները չէ խանդավառած:

Ժողովէն երեք տարի առաջ (1436) երբ Հռոմի Պապը իր հրաւէրները ցրուած էր, Տիարպէքիրի Մկրտիչ Նաղաշ Արք.ը Հռոմի Պապին թուղթ մը ղրկած էր Կոստանդին Կաթողիկոսի անունով եւ Թովմա Մեծոփեցիի հրամանով, եւ ներկայացուցած էր հայ եկեղեցիին դաւանութիւնը: Ան բացորոշ կը յայտարարէ թէ «Քաղկեդոնի ժողովը բաժնած է Եկեղեցին, եւ եթէ այդ դաւանութիւնը մերժուէր եւ միայն երեք Տիեզերական ժողովները ընդունուէին, արդէն միութիւնը կատարուած կ'ըլլայ եւ մենք ալ կը հնազանդինք ձեզի»:

Ֆլորենցայի ժողովը հետեւաբար Քրիստոնեայ մնացեալ ճակատ մը կազմելու չծառայեց եւ թուրքերը կը շարունակուէին տարագրուիլ:

1453ին գրաւեցին Կ. Պոլիսը եւ խզեցին Արեւելքի ու Արեւմուտքի առեւտրական յարաբերութիւնները, մինչ հաւաքական ոյժերով թուրքերուն դիմադրելու եւ անոնց ստեղծած խոչընդոտները վերցնելու յոյսեր կը նուազին, խաչակրութիւններ կազմակերպելու նախաձեռնակ կ'ըլլայ Նիկողայոս Ե. Պապը (1447-1455) թելադրութեամբ Վենետիկի հասարակապետութեան որ իր վտանգուած առեւտուրը վերահաստատել կ'ուզէր Մերձաւոր Ասիոյ ոչ միայն քրիստոնեայ, այլ մահմետական պետութիւններու օժանդակութեամբ:

Թուրքիոյ հանդէպ թշնամական տրամադրութիւննր ունեցող այդ պետութիւններուն հետ բանակցելու համար Կալիստրոս Գ. Պապը (1455-1458) Արեւելք ղրկեց Լուի Բոլոնեացին, որ բանակցեցաւ Տրապիզոնի Դաւիթ Կայսեր, Աբխազեայի եւ բաժան բաժան եղած Վրաստանի թագաւորութիւններուն եւ մահմետական կարգ մը իշխաններուն հետ: Այս վերջիններուն մէջ կը յիշուի Փոքր Հայքի Բերդի Պէկը՝ Իսֆէնդիարի որդին, Սինոպի տէր՝ Իսմայիլ Բէկը եւ Ղարամանի Սուլթանը, ինչպէս նաեւ Աք-Գոյունլու Ուզուն Հասանը:

Այս հակաթուրք արշաւանքին մասնակցելու խոստում տուած էին Կովկասէն կարգ մը ցեղախումբեր եւ երկու ժողովրդապետութիւնները խոյթի եւ Սասունի երկիրներուն, որոնք հայկական էին ապահովաբար:

Այս երկու ժողովրդապետութիւններէն, 1459-1460ին, Լուի Բոլոնեացին առաքելութիւնէն ետք, Հռոմ գացին երկու պատրիարքներ՝ Հեթում եւ Ռուբէն անուններով: Ասոնք Հունգարիոյ եւ Գերմանիոյ ճամբով գացին Հռոմ եւ անկէ անցան Ֆրանսա, Շառլ Է. թագաւորին եւ անոր որդի Լուիի դիմեցին:

Գլխաւոր նպատակը վերագրաւումն էր Կ. Պոլսոյ:

Եթէ յաջողէին թուրք տիրապետութեան եւ ապազայ նուաճումներուն բոլորովին վերջ տալ, մեծ յաջողութիւն մը պիտի ըլլար:

Այս արշաւանքին համար Վրացիները 70.000 զինուոր, Տրապիզոնի Կայսրը՝ 30.000 զինուոր եւ 30 պատերազմական նաւեր, Փոքր Հայք՝ 20.000 զինուոր պիտի տային։ Ուզուն Հասանի եւ միւսներուն հայթայթելիք ուժերը չէր ճշդուած։

Սակայն դաշնակիցները գործի չձեռնարկած, թուրքերը գրաւեցին նաեւ Աթէնքը (1458ին), Սերպիան (1459), Պոսնան (1460) եւ Տրապիզոնի կայսրութիւնը (1461)։

Կացութիւնը Արեւելքի Քրիստոնեաներուն համար յուսահատական էր, վասնզի թուրքերը օրէ օր կ'առաջանային, մինչ անոնք ոչինչ կրցան ընել դիմադրութիւն մը կազմակերպելու համար։

ԺԵ. դարու վերջին կէսին, գործի գլուխ են ինքնագլուխ Կախէթը, Քարթլին, Իմիրիթը, Ապխազեան, Գուրեան, եւայլն, եւայլն։ Իսկ Հայաստան այդ ժամանակամիջոցին թատերաբեմ կը հանդիսանայ Ագ-Գոյունլուներու եւ Գարա-Գոյունլուներու կռիւներուն։

Թրքական վայրագ հարուածներուն ենթարկուած էին Պարսկաստանը, Ղրիմը, Լեհաստանը, Հունգարիան, Աւստրիան, Նաբոլին եւ Վենետիկը։

Հակաթուրք ճակատ կազմակերպելու համար բանակցութիւններու կը մասնակցին այդ թուականներուն – ետք Ուզուն Հասան եւ Վենետիկցիները, որոնք անմիջականօրէն շահագրգռուած էին Թուրքիան ընկճելու։ Համադաշնակցութեան բանակցութեանց միջնորդ կը հանդիսանան Գարամանի իշխաններու եւ Կիպրոսի Լուսինեանները։

Հայ պատմագիր մը կ'ենթադրէ թէ Ուզուն Հասանի կատաղի թշնամին Գարա Գոյունլու Ջհան Շահ (1457-1467) հայերը իր կողմը ունենալու համար է որ այնքան բարեացակամ եղած է Աղթամարի Զաքարիա Կաթողիկոսին հանդէպ, որ թոյլ տուած էր որ Սմբատ Սէյֆէտտինեանը հայոց թագաւոր օծէ (1465) Աղթամար կղզիի մէջ։

1463ին Ուզուն Հասան վճռական յաղթանակ մը կը տանի թուրքերուն վրայ։ Քրիստոնեաները նպաստաւոր տրամադրութիւն ցոյց կուտան իբր ազատարար ընդունելով Ուզուն Հասանը, վասնզի թէ հակառակորդ Գարա Գոյունլուներու Ուզուն Հասան կ'ընդգրկէր Քրիստոնեաներու շոյող քաղաքականութիւնը։ Այս պատճառով հայերը կը նպաստեն ոչ միայն Ուզուն Հասանի պետութեան միաձուլման, այլ նաեւ Թուրքիոյ դէմ անոր մղած պայքարին։

Ուզուն Հասան այս պայքարին մէջ Եւրոպայի աջակցութիւնը խնդրած էր եւ այս նպատակով դեսպաններ ղրկեց Եւրոպա 1464-8 թուականներէն սկսեալ։ Առաջին դեսպանները պարսիկ էին, բայց Հռոմի Պապին դեսպան ղրկելու համար յարմարագոյն նկատեց 1469ին Քրիստոնեայ հայ մը՝ Միրուքը ղրկելով։

Միրուք, որդին էր իսլամութիւնը ընդունած ոսկերիչի մը, որ ինքն քրիստոնեայ մնալով կրցած էր հարստանալ եւ պատիւներու արժանանալ Դաւրէժի արքունիքէն թէ Իսկէնտէրի (1420-1437) թէ Ջհան Շահի (1437-1467) եւ թէ Ուզուն Հասանի

(1453-1478) իշխանութեանց ատեն։

Միրուք, Դաւրէժի հայոց մէջ շատ ազդեցիկ դիրք ունէր (խօճա Միրուք), որ ըրած է բարեսիրութիւններ եւ դրամական հատուցումով գերիներ ազատած։

1469ին անցաւ Եւրոպա, գնաց Հռոմ եւ 1470ին Վենետիկ, Ուզուն Հասանի թուղթերը ներկայացուց եւ անոնց օգնութիւնը խնդրեց թուրքերու դէմ, յոյս ունենալով որ, Վենետիկցիներու նաւատորմիղին օգնութեամբ եւ իր ցամաքային բանակով կարելի պիտի ըլլար թուրքերը դուրս հանել Եւրոպայէն ու Ասիայէն։

Բանակցութիւններ երկար տեւեցին, վասնզի Վենետիկցիք Թուրքիոյ հետ դաշինք ունէին եւ պատասխան կը սպասէին։

Վենետիկ որոշեց դեսպան մը ղրկել Ուզուն Հասանին մօտ եւ Միրուքը դարձուց թուղթով մը, ուր կը յորդորէր Օսմանեան պետութեան դէմ աղէկ պատրաստուիլ Ուզուն Հասանի Գարաման ղրկած 40.000 զօրքը անբաւական նկատելով։

Միրուք եւ Վենետիկի դեսպանը (Կատարինէ Շինօ) միասին ճամբայ ելան, բայց ճամբան իրարմէ բաժնուած ըլլալ կը թուին։

Միրուք կրցաւ Վենետիկը եւ Պարսկաստանը դաշնակից դարձնել։ Վենետիկցիք գրաւեցին Կիլիկիոյ ծովեզրեայ մի քանի բերդերը եւ Ուզուն Հասան ցամաքի վրայ յաջողութիւններ ձեռք բերաւ թուրքերուն դէմ։

Սակայն ոչ Վենետիկցիք մնացին Կիլիկիոյ ծովեզերքը եւ ոչ ալ Պարսիկները կրցան պահել իրենց գրաւած հողերը։

1473 Յուլիս 26ին Դերջանի մէջ ծանր պարտութիւն մը կրեց Ուզուն Հասան եւ իր տէրութիւնը ցնցուեցաւ։

Իր յաջորդներու ժամանակ աւելի տկարացաւ իր պետութիւնը, եւ ինչպէս տեսնուեցաւ, այս անկման շրջանին էր որ Ատրպէյճանի մէջ զօրացան Սէֆեանը, որոնք մոլեռանդութիւն ցոյց տուին։

Ուզուն Հասանի որդին Եաղուպ մոլեռանդական արարքներով սկսաւ չարիքներ գործել։ Քրիստոնեաներուն արգիլեց ձի նստիլ, եկեղեցիներու զանգակ հնչեցնել, ճերմակ գօտի առանց կապոյտի կապել եւայլն։ Անոր ատենն էր որ սպաննել տուաւ խօճա Միրուքը, Ուզուն Հասանի մահէն տասը տարի վերջ (1478) Դաւրէժի մէջ 1488 Մարտ 21ին, Աւագ Ուրբաթ օրը։

Այս եւ ասոր նման դէպքեր, հայերը մղեցին փրկութիւն որոնելու եւ հաւանօրէն այդ պատճառով է որ գոնէ Խոյթի եւ Սասունի տեղական հայ իշխանները իրենց մասնակցութիւնը բերին հակաթուրք համադաշնակցութեան մը, կազմելով նպատակով կատարուած բանակցութիւնները։

* * *

Սէֆեանք երբ Պարսկաստանի մէջ կացութեան տէր դարձան ԺԶ. դարուն

սկիզբները, երկիրը դարձաւ աւատապետական կարգերով միացեալ ցեղապետութիւններու միութիւն մը, ուր աւազակային կարգեր կը տիրէին, վասնզի զինուորներու մոլեռանդ կամաւորներու-թոշակ չէին ստանար եւ իրենք դրամ կուտային: Բնական է որ կողոպուտով կ՚ապրէին:

ԺԶ. դարուն վերջերը Սէֆեանք դարձան Իրանի տէրը, եւ ամէնէն առաջ իրենց ուշադրութիւնը դարձուցին Գիլանի եւ Շիրվանի մետաքս արտադրող հողերուն վրայ:

Սէֆեանք իշխանութիւնը նոյնքան աւերիչ եղաւ Հայաստանի եւ հայ Ազգին համար, որքան եղած էին նախորդ թուրք եւ պարսիկ պատերազմները:

Երկու կողմերն ալ կը ձգտէին Հայաստանը եւ Հարաւային Կովկասը ստրկացնել եւ կեղեքումը դարձնել եկամուտի աղբիւր:

Այս կռիւներու միջոցին Շիի եւ Սիւնի դաւանութիւններու մոլեռանդական մոլեգին պայքարը մինչեւ 1639 հասաւ Մերձաւոր Ասիոյ ռազմագիտական դիրքերը գրաւելու եւ Հնդկաստանէն ու Կեդրոնական Ասիայէն միջերկրականեան նաւահանգիստները տանող ճամբաները եւ առեւտուրի կայանները՝ Դաւրէժը, Երեւանը, Էրզրումը եւ Եւդոկիան, ինչպէս նաեւ Կասպից եւ Սեւ ծովերը միացնող առեւտուրի հաղորդակցութեան գլխաւոր գիծերը եւ անոնց վրայ գտնուող կարեւոր հանգրուանները՝ Թիֆլիսը, Գանձակը, Շամախին եւ Դերբէնդը գրաւելու պայքար մըն էր, ինչպէս անգլիացի ուղեգիր մը (Ջինկենուն) կ՚ըսէ:

Գլխաւոր պայքարի առարկան Գիլանի մետաքսն էր: Մէկուկէս դարու ընթացքին պարբերաբար կրկնուող բախումները մերձաւոր Ասիոյ մէջ, մասնաւորապէս հայոց համար աննպաստ էր եւ բարբարոսական արշաւանքներու արհաւիրքները կը յիշեցնէին:

Պատերազմները թնդանօթով եւ հրացանով կը մղուէին եւ հետեւաբար աւելի մեծ ծախքերու կ՚ենթարկէին պետութիւնները, աւելի մեծ աւերումներ ու մարդկային աւելի մեծ կորուստներ: Պարսիկները ծանօթանալով հրացան եւ հրանօթ պատրաստելու եղանակին, ոչ միայն կը դիմադրէին թրքական յարձակումներուն այլ յաճախ կը փոխադարձէին պատերազմը թշնամիին երկիրը:

Ինչպէս տեսնուեցաւ, թուրքերը 1514ին գրաւեցին Դաւրէժը, որ 1535ին եւ 1546ին եւս գրաւուեցաւ եւ հարկադրեց Սէֆեանները որ իրենց մայրաքաղաքը Ղազվին փոխադրեն:

1546ին թուրքերը գրաւեցին Կովկասի հարաւէն անցնող առեւտրական ճանապարհներու ռազմական բանալին Կարսի բերդը:

Հայերը, իբր գլխաւոր տուժողները կը ջանային թրքական եաթաղանէն ազատիլ:

Տուրքերը սարսափելի էին, աւելի ըլլալով հրէշային մանկաժողովը (տէվշիրմէն) որ ոչ միայն պատերազմի, այլ խաղաղութեան ատեն ալ կը գործադրեն, շեշտելով «հաւատացեալի» ու «անհաւատի» միջեւ ստեղծուած խտրու-

թիւնը։

Հպատակները ստրուկ կամ ճորտ դարձնող Օսմանեան բարբարոս ռէժիմը, կը քանդէր երկրին արտադրող ուժերը, կը քայքայէր աշխատաւոր զանգուածներու նիւթական բարեկեցութիւնը։ ԺԶ. դարուն կէսերուն, Օսմ. տիրապետութեան տակ գտնուող երկիրները տնտեսական անձկութեան եւ սովի մատնուած էին։

Բոլոր այս տագնապներուն եւ աղէտներուն անմիջական աղբիւրը ԺԵ. դարուն սկսած եւ ԺԶ. դարուն կարճ ընդմիջումով շարունակուած թուրք եւ պարսիկ կռիւն էր։

Այս պատերազմները աղիտաբեր հետեւանքներ ունեցան նաեւ պարսիկներուն համար։

1531ին Դաւրէժի Պէյլէրպէկ Ուլաման ապստամբեցաւ Թահմազ Շահին դէմ։ Շահը զօրք հաւաքեց ապստամբներուն դէմ։ Ուլաման ապաստանեցաւ Թուրքիա եւ ամրացաւ Վանի բերդին մէջ։ 1533ին թուրքերուն հետ միացած՝ ետ առաւ Դաւրէժը, իսկ 1535ին Պարսիկները հակայարձակումով առին Վանը եւ աւերեցին, ջարդի եւ սովի մատնելով քաղաքը, ուր 16.000 մեռեալներ եղան։

1538-39ին Շիրվանը ապստամբեցաւ թահմազ Շահին դէմ։ Ապստամբները նուաճեց Շահին եղբայրը՝ Ազխալ Միրզան, որ տէր դարձաւ Շիրվանի ու 1545-46ին ինքզինք անկախ հռչակեց։ Թահմազ Շահին դէմ ապստամբեցաւ նաեւ Վրաստանը (1546-47)։ Ան խեղդեց եղբօր ապստամբութիւնը ու անցաւ Վրաստան։ Ախլազ, Միրզա խոյս տուաւ ու ապաստանեցաւ Թուրքիա, գործակցեցաւ անոնց Վանի եւ Արճէշի գրաւման ատեն։ Միրզա խոյս տուաւ ու ապաստանեցաւ Թուրքիա, գործակցեցաւ անոնց Վանի եւ Արճէշի գրաւման ատեն։ Ապստամբական շարժումները շարունակուեցան Վրաստանի եւ Ղարաբաղի մէջ։

Քարթլիի թագաւորը (Լուարսաբը) նոյնպէս ապստամբեցաւ եւ մինչեւ իր մահը (1558) հարկադրեց պարսիկները որ հինգ անգամ Կովկաս արշաւեն, աւերելով Լոռին ու Ղարաբաղը, առանց վճռական արդիւնքի, իվերջոյ հնազանդեցուց Շիրվանը, Ղարաբաղը եւ Գանձակը ու հաստատեցին Կովկասի մէջ։ Շիրվանի, Ղարաբաղի եւ Արեւելեան Վրաստանի ու Նախիջեւանի-Երեւանի Պէկլէրպէյութիւնը կամ կիսանկախ խանութիւնները։

Թահմազ Շահ իբր փոխ վրէժ գործադրեց ջարդեր եւ աւերածութիւններ բնակչութենէն դատարկացուց երկիրը։ Ռուս Դեսպանը կը գրէ, թէ Թահմազ աւերակ դարձուց թրքական սահմանին վրայ վեց օրուան ճանապարհի հեռաւորութեան վրայ երկու կողմին վրայ գտնուող բնակավայրերը, քանդեց բոլոր ամրոցները, թուրքերը դրկելու համար ետ առնելու յոյսը։

## Է. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ԵՒ ՎՐԱՑԱԿԱՆ ԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆ ԱԶԱՏԱԳՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՒ ՎՐԱՍՏԱՆԸ (1550-1600)

Հայերը իրենց յոյսը դրած էին դուրսէն գալիք օգնութեան վրայ, ուստի գաղտնի ձեռնարկներ ըրած են շարժելու համար քրիստոնեայ Եւրոպան Թուրքիոյ դէմ, որուն բռնակալութիւնը եւ հարստահարութիւնը կը գերազանցէր Պարսկաստանը:

Հայերը գաղտնի բանակցութիւններու մտնելով Հռոմի Աթոռին հետ – ինչպէս ըրին Ստեփաննոս Սալմաստեցիի յաջորդները, – որոնք ապարդիւն մնացած էին, մինչ ըստ առաջնոյն հարստահարութիւնները եւ կեղեքումները կը շարունակուէին Հայաստանի մէջ:

* * *

ԺԶ. դարուն սկիզբը Հայ ազգը քայքայումի ենթարկուած էր: Հայ եկեղեցին խորապէս ցնցուած էր տիրող վիճակէն:

Աղուանից եւ Աղթամարի կաթողիկոսները Ամենայն Հայոց Կաթողիկոսին թեմերը կը յափշտակէին: Հայոց կաթողիկոսներու իշխանութեան միասնականութիւնը եղծուած էր Աթոռակիցներու ընտրութեամբ, որոնք մէկէ աւելի ալ կ'ըլլային: Նոյնիսկ անոնք իրարու դէմ կը մաքառէին անհամաձայնութիւններու պատճառով:

Ժամանակը շատ վատ էր, սակայն հայերը անմեռ հաւատքը ունէին թէ պիտի գար փրկութիւնը, ուստի յոյս դրած քրիստոնէութեան վրայ, իրենց ակնարկը ուղղած էին դէպի Հռոմ, զոր սիրաշահելու համար՝ մեր եկեղեցւոյ պետերն ալ կեղծ ձեւեր կը կիրարկէին վստահեցնելու համար Հռոմը, թէ իրենք մտադիր են մօտենալու կամ նոյնիսկ հնազանդելու Հռոմին պայմանաւ որ փրկէր զիրենք:

Բայց խաչակրութեանց շրջանը անցած էր եւ Եւրոպայի ուշադրութիւնը ուրիշ կողմ դարձած էր Ամերիկայի գիւտէն ետք (1492): Անոնք կ'աշխատէին նոր Աշխարհը եւ Հնդկաստանը գրաւել եւ այդ երկիրներու բնիկները քրիստոնեայ դարձնել: Այլեւ, յագուրդ տալու համար իրարու հանդէպ ունեցած ատելութիւններուն՝ Թուրքերը կ'օգտագործէին ու իրենց հակառակորդներուն դէմ կը մղէին: Հռոմի պապերն իսկ թրքասիրութիւն ցոյց տալ սկսան:

Թուրք եւ Պարսիկ պատերազմը նպաստաւոր էր Եւրոպայի համար, վասնզի

թուրքերը Ասիոյ մէջ զբաղած ըլլալով, չէին կրնար դէպի Եւրոպա յառաջանալ:

Վենետիկ կորսուած էր միջազգային առեւտուրի մէջ իր իշխող դիրքը եւ իզուր կը ջանար իր առեւտրական գերազահութիւնը վերականգնել եւ այս նպատակով Թուրքիոյ դէմ մաքառելու համար անոր թշնամի՝ Պարսկաստանի արքունիքը դեսպաններ կը փութացնէր ու կաթոլիկ քարոզիչներու աջակցութեան կը դիմէր:

Երբ Պարսիկ գահը անցաւ Սէֆեաններուն, ԺԶ. դարուն սկիզբները Շահ Իսմայիլ Սէֆեան առաջին վեհապետը, շարունակելով Ուզուն Հասանի քաղաքական ուղեգիծը, Թուրքիան սանձահարելու նպատակով Եւրոպացիներուն եւ մասնաւորապէս Թուրքիոյ անհաշտ թշնամի Վենետիկի հասարակապետութեան հետ զինակցիլ ուզեց:

Շահ Իսմայիլի յաջորդը, Թահմազ Ա. Շահը (1525-1576) շարունակեց իր նախորդին ուղղութիւնը, Թուրքիոյ դէմ ընդհանուր ճակատ կազմելու համար մասնաւոր դեսպանութիւն ղրկեց Եւրոպա, բանակցելու համար վենետիկցիներու, Գերմանիոյ Կարոլոս Ե. Կայսեր եւ Հունգարիոյ թագաւորին:

Վենետիկ, որ մեծ առանձնաշնորհումներ ձեռք բերած էր Թուրքիայէն 1574ին տասնամեայ զինադադարէն վերջ, երբ Թուրք եւ Պարսիկ կռիւը վերսկսաւ ձեռնպահ մնաց, վասնզի արտաքին եւ ներքին դժուարութիւններ ունէր եւ թուրքերը Միջերկրականի մէջ Կիպրոսի գրաւումէն եւ Մալթայի վրայ յարձակումէն վերջ՝ սարսափ կ՚ազդէին:

Հռոմ ալ կորսնցուցած էր իր հեղինակութիւնը եւ միայն Վերանորոգութեան շարժմամբ դարմանել կը ջանար իր նիւթական եւ բարոյական վնասները:

Այս պայմաններուն մէջ խաչակրութեան վրայ յոյս դնել անկարելի էր:

Հայերու, ինչպէս նաեւ Արեւելքի քրիստոնեաններուն համար այս աննպաստ պայմաններուն մէջ, Պարսկաստանի մէջ պատահեցան դէպքեր, որոնք նոր դժբախտութիւններ բերին հայոց:

Թահմազ Շահի մահէն ետք, իր յաջորդին՝ խուրապէնտ Շահին ժամանակ երկիրը անիշխանութեան մատնուեցաւ:

Անկէ օգտուելով, Սուլթան Մուրատ Գ. գրաւեց Հարաւային Կովկասը, երբ Ռուսիա արդէն հասած էր Կովկասեան սահմանները, վրդովելով թէ Թուրքիան եւ թէ Պարսկաստանը, վասնզի ռուսերը տնտեսական եւ քաղաքական կապեր հաստատած էին Կովկասի ժողովուրդներուն, հայոց եւ ատրպէյճանցիներուն հետ, որոնց ճնշել կ՚ուզէր Թուրքիա, աշխատելով գրաւել Երեւանը, Թիֆլիսը, Գանձակը եւ Շամախին, Դաւրէժը եւ Դերպէնտը, ինչպէս նաեւ Ղրիմը:

Պարսիկները եւ Վրացիները դիմադրեցին Օսման եւ Լալա փաշաներու բանակներուն եւ ունեցած նոյնիսկ մասնակի յաջողութիւններ, սակայն չյաջողեցան Հարաւային Կովկասէն վտարել թուրքերը:

Սակայն Օսմանեան պետութիւնը դժուարութեան մատնուած էր դրամ ճարելու համար պալատան պերճ կեանքին համար:

Միւս կողմէ Պարսկաստան ալ տագնապալից վիճակ մը ունէր տնտեսապէս։ Թուրքիա եւ Պարսկաստան հաւասարապէս կը կեղեքէին ժողովուրդը տուրքերով եւ հակասական ու ծիծաղելի որոշումներով։

Շահ Աբբաս, որ կրցած էր քիչ շատ քրիստոնեաներու եւ մահմետականներու միջեւ խտիրը վերցնել, նկատուեցաւ «բարեկամ քրիստոնէից»։

Բռնութիւններէն ու կեղեքումներէն քիւրտ, վրացի եւ հայ հոգեւորական եւ աշխարհական ներկայացուցիչներ 1590ին գաղտնի երթալով Պարսկաստան Շահ Աբբասէն (1587-1628) խնդրեցին զինուորական միջամտութիւն։

Այս առթիւ կը յիշուին Դիզակի Մելիք Շահնազարը, եւ Քշտուղի Մելիք Հայկազը Դիզակի չորս գիւղերու եւ Ագուլիսի Դաշտ գիւղի բնակչութեան 3 քառորդ մասը անցան Պարսկաստան, իսկ սահմանամերձ Ջուղայի եւ անոր շուրջի վայրերու, ինչպէս Ագուլիսի, Շոռոթի, Աստապատի եւ այլ վայրերու հայերը խնդրեցին իրենց առանձնաշնորհեալ հանգամանքը պահպանել, վասնզի թուրք տիրապետութեան տակ տուժած էին։

Ը. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԺԷ. ԴԱՐՈՒՆ ՄԷՋ ՀԱՅ ԵՒ ՅՈՅՆ ԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՓՈՐՁ ՄԸ, ԱԶԱՏԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

1600ին Վրաստանի Սիմոն թագաւորի գերի բռնուելէն ետք, Արեւելեան Հայաստանի եւ Վրաստանի մէջ հայերը ամէն յոյս կորսնցուցին եւ ենթարկուեցան թրքական լուծին:

Պարսկաստան, որ հակաթուրք համադաշնակցութեան մէջ մտած էր եւ Եւրոպայէն օգնութիւն կ'ակնկալէր՝ մինակ մնաց Թուրքիոյ դէմ, վասնզի Հռոմ ոչինչ կրցաւ ընել Եւրոպան շարժելու համար:

Շահ Աբբաս մինակ մնաց թուրքերու դէմ մաքառող եւ այս նպատակով իր երկիրը վերակազմելու աշխատանքին ձեռնարկեց, Անգլիացի Շիրլի երեք եղբայրները Պարսկաստան կանչելով: Անոնք պարսիկ բանակը վերակազմել աշխատեցան: Երկու եղբայրները ջանացին ապահովել Եւրոպայի աջակցութիւնը, որ երբեք չհասաւ, վասնզի պապերը այլեւս անզօր էին Եւրոպան շարժման մէջ դնելու: Հետեւաբար Պապերը առիթէն օգուտ քաղել ուզեցին Պարսկաստանի հայերը կաթոլիկ դարձնելու պարսիկ Շահին ազդեցութեամբ:

Շահ Աբբաս, Անտոն Շիրլիի միջոցաւ «հերձուածողներ»ը կաթոլիկ եկեղեցիին հնազանդեցնելու աշխատեցաւ: Այս ուղղութեամբ, Պօղոս Ե. Պապէն (1606-1621) Ռոպերթ Շերլի խնդրեց Շահին անունով, որ Էջմիածին ղրկէ պապական եկեղեցականներ՝ հայ եկեղեցականներու հպատակութիւնը ստանալու համար եւ պատրաստակամութիւն կը յայտնէ տուրքերը թեթեւցնել, երբ հայերը Հռոմի հնազանդին:

Հռոմ իրական ոչինչ կրնար ընել, եւ նոյնիսկ Կղեմէս Ը. Պապը (1592-1605) անկարող եղաւ շարժել Ֆրանսան, Թուկանան, Մալթան եւ Լեհաստանը, երբ Գերմանիոյ Ռոտոլֆ Կայսրը յարձակեցաւ Թուրքիոյ վրայ:

Շահ Աբբաս, առանց սպասելու Եւրոպայի օգնութեան, ԺԷ. դարուն սկիզբը, նպաստաւոր պահ համարեց Թուրքիոյ վրայ յարձակելու, վասնզի Ճելալիներու ապստամբութիւնը կը սպառնար Թուրքիան քայքայել եւ անիշխանութեան մատնել:

Շահ Աբբասի այս նախաձեռնութիւնը, որ պարսիկ թուրք պատերազմներու ամենէն դառն հետեւանքը եղաւ Հայաստանի եւ Վրաստանի համար՝ վերիվայր կը դարձնէր ամէն բան վասնզի, Շահ Աբբաս, իբր պատերազմական միջոց, Արարատեան նահանգը կը դատարկացնէր եւ հազարաւոր հայեր ու վրացիներ կը տարագրէր Պարսկաստանի խորերը, եւ ահռելի դժբախտութեան մը պատճառ

կ՚ըլլար հայոց եւ վրաց։

Թէ Վրաստանի եւ թէ Հայաստանի բնակիչները այնքան դժնդակ վիճակի մը մատնուած էին որ, անկարելի էր որ կարենային մտածել ապստամբութեան մը վրայ, ուստի Սիմոն թագաւորի գործը շարունակել անկարելի կը դառնայ եւ Արեւելեան Հայաստանի մէջ այս մասին մտածող չի գտնուիր։

Ասոր փոխարէն հայերը, որ միշտ անվհատ կերպով հետապնդած են իրենց ազատագրութիւնը ձեռք անցնելու, Արեւմուտքի մէջ կ՚ընեն իրենց կարելին Թուրքին դէմ եթէ ոչ ուղղակի գէթ անուղղակի՝ կռուողներուն իրենց աջակցութիւնը բերելով։

* * *

1453ին, երբ Պալքանեան թերակղզիէն ետք Կ. Պոլիսը գրաւուեցաւ, յոյները եւ Պալքանեան երկիրներու օրթոտոքսները, պուլկարները, սերպերը, վալաքեացիները եւ ալպանացիները նուաճուած չէին։ Մասնաւորապէս Պալքանի լեռնային մասերու բնակիչները անընկճելի կորովով մը, շարունակ իրենց ՔԱԼԻ-ՔԱՐԻԱՆերով թրքական լուծին դէմ մաքառած են։

Նոյնքան սաստկութեամբ թուրք տիրապետութեան դէմ կռուած են Արշիպեղագոսի բազմաթիւ յոյն բնակիչները եւ մասնաւորապէս Կրետէ կղզիին յոյները, որոնք ամենէն ուշ թրքական տիրապետութեան ենթարկուած էին, վասնզի Վենետիկի հասարակապետութիւնը տիրած էր Կրետէի։ Թուրքերը, երկար մաքառումէ ետք միայն կրցան գրաւել կղզին որ, միշտ ըմբոստ մնաց ու միշտ մաքառեցաւ թուրքերուն դէմ։

Արշիպեղագոսի կղզիները, ինչպէս նաեւ Կրետէն, հակառակ որ անուանապէս օսմանցիներէ տիրապետուած են, սակայն միշտ պահած են իրենց յունական նկարագիրը, զուտ յոյն բնակչութեամբ. բացի Կրետէէն, որուն բնակիչներէն մէկ մասը բռնի իսլամացած էր արաբական տիրապետութեան տակ ու Օսմանեան տիրապետութեան տակ՝ իբրեւ իսլամ՝ թուրք նկատուած, սակայն չէր թրքացած ու կը պահէր յոյն լեզուն։

Կրետացիք, ինչպէս Արշիպեղագոսի կղզիներու յոյն բնակիչները եւ Պալքանեան երկիրներու մէջ ապրող օրթոտոքս ժողովուրդները միշտ նեղած են թուրքերը ծովահենութեամբ կամ ծովասպատակութեամբ՝ ծովերու վրայ, եւ հրոսակութեամբ՝ լեռնազաւառներու մէջ։

Ինչպէս հայերը, նոյնպէս նաեւ յոյները, քրիստոնեայ Արեւմուտքի վրայ յոյս դրած էին ու կը սպասէին անոնց օգնութեան, որ չէր հասնէր դժբախտաբար։

Եւրոպա, որ այնքան մօտ էր աշխարհագրապէս յոյնաբնակ երկիրներուն եւ որ այնքան շատ բան կը պարտէր հելլենականութեան, ԺԵ. դարէն մինչեւ ԺԸ. դար գրեթէ ոչինչ ըրած է յունաց համար։

Հայերը, յունաց դժբախտ ճակատագրին ենթարկուած էին աւելի հեռու՝ Արեւելքի մէջ, գրեթէ յուսահատական վիճակի մէջ էին ԺԷ. դարուն առաջին կէսին:

Վենետիկցիք Կրետէն բուռն կերպով կը պաշտպանէին 1645էն մինչեւ 1669 Սեպտ. 6՝ Գանտիայի անկումը, բնիկ յոյներուն հետ, քրիստոնեաներու օգնութեան վրայ յոյս դրած էին:

Այս պայքարին իրենց մասնակցութիւնը կը բերեն նաեւ Արեւելքի քրիստոնեայ թագաւորութիւններէն Մոսկուա եւ Վրաստան:

Այնքան ցնցող հանգամանք ունէր այս պատերազմը որ, եպարքոսութեան կոչուեցաւ կորովի անձ մը՝ Քէօփրիւլիւ Մէհմէտ Փաշա, որ 30.000 ենիչէրիներ եւ անվստահելի պաշտօնատարներ մաքրագործեց, պալատական կանանոցը կարգաւորեց ու մայրաքաղաքը հանդարտեցուց:

1663ին թուրք երկու բանակներ արշաւեցին Աւստրո-Հունգարիա եւ յառաջացան մինչեւ Սիլիզիա, սպառնալով գերման եւ սլաւ քրիստոնեայ աշխարհին:

Ռուսիա ԺԷ. դարուն կէսերուն կը հանդիսանար Եւրոպական քրիստոնեայ ուժեղ պետութիւններէն մին եւ կարեւոր դեր խաղալ սկսած էր Արեւելեան Եւրոպայի քաղաքական կեանքին մէջ: Մինչեւ այդ շրջանը, խաչակրական շարժումները ուրիշ նպատակ չունէին եթէ ոչ միայն Ֆրանսական եւ պապերու ազդեցութեան տարածումը Արեւելքի մէջ:

Ինչպէս տեսնուեցաւ Արեւմտեան Եւրոպական առեւտուրի գլխաւոր դերակատարը Մերձաւոր Արեւելքի մէջ Ֆրանսան էր, որ կը յենուէր 1535ին եւ 1589ի իր ստացած առանձնաշնորհումներուն (գաբիթիւլասիոն) վրայ, որոնց համաձայն միայն ֆրանսական դրօշով նաւեր իրաւունք ունէին թրքական նաւահանգիստները մտնելու: 1593ին, Անգլիա եւս ստացաւ նման առանձնաշնորհումներ իր առեւտուրին համար: Քիչ ետք, 1598ին, Հոլանտա եւս ստացաւ մասնակի իրաւունքներ որոնք 1612ին Ֆրանսայի եւ Անգլիոյ իրաւունքներուն հաւասարեցան:

Ֆրանսական առեւտուրը Արեւելքի մէջ վնասուեցաւ երբ իր մենաշնորհեալ դիրքը կորսնցուց ԺԷ. դարուն սկիզբը ու սկսաւ պայքարիլ Անգլիոյ եւ Հոլանտայի դէմ:

Ֆրանսայի ձեռնարկած այս պայքարին լծուեցաւ նախ Վատիկան, որուն շահերը, բողոքականութեան դէմ իր մղած պայքարին մէջ կը պահանջէին անգլիական եւ հոլանտական ազդեցութիւններու վճարումը Արեւելքէն:

ԺԷ. դարուն սկիզբը, Հռոմի պապերուն կողմէ գործածուած շարժումներուն նպատակը զէնքով գրաւել էր Մերձաւոր Արեւելքը: Պապերը կ'ուզէին ասով ձեռք բերել Արեւելեան քրիստոնեաներու շահերուն պաշտպանութիւնը, եւ ասոր համար կը գովաբանէին ֆրանսական ուժը, որպէսզի նպաստեն քրիստոնեաները ենթարկուելու պապերուն եւ ֆրանսական տնտեսական գրաւման: Այս նպատակով Ուրբանոս Ը. Պապը (1623-1641) 1630ին ֆրանսացի քարոզիչներ ղրկեց

Սուրիա, Լիբանան, Պաղեստին եւ Եգիպտոս, տեղական ժողովուրդներու կրօնական պետերուն նամակներ գրելով, ուր կը փառաբանուէին Ֆրանսան ուրկէ երեւան եկած էին լեգէոններու զինուած բարեպաշտութիւնը, քրիստոնեայ թագաւորներուն առաջնորդելով Սիոնի գերիներու շղթաները, որոնք խորտակելով եւ Երուսաղէմի պարիսպները նորոգելով եւ «ուրկէ մէկէ աւելի անգամներ երջանկութիւնը եւ յաղթանակը նաւարկեցին դէպի գերի արեւելքը, ամենաքրիստոնեայ նաւատորմի հետ»:

Այսպէս կը գրգռէին բոլոր Արեւելքը, իմէջ այլոց նաեւ հայերը:

Թէատինեան կրօնաւոր Կղեմիս Կալանոս, որ հայոց կը քարոզէր միանալ Հռոմի եւ հռոմէացիներու եւ ֆրանկներու միջոցաւ ազատութիւն ձեռք բերել՝ ինքն ալ կը շահագործէր Մեծն Ներսէսի տեսիլքին առասպելը:

Պապերու եւ Արեւելքի մէջ գործող կաթոլիկ քարոզիչները որոշ չափով յաջողեցան ազդել Արեւելքի քրիստոնեաներուն վրայ, մանաւանդ այդ միջոցին բռնկած Կրետէի պատերազմէն օգտուած՝ վասնզի կը կարծէին թէ անխուսափելի էր թրքական բռնակալ իշխանութեան պարտութիւնը եւ տապալումը:

1645ին սկսած կռիւը տեւած էր մինչեւ 1669, ամբողջ 25 տարի իր վրայ դարձուցած էր աշխարհի ուշադրութիւնը:

Մաքառող երկու ուժերն էին Օսմանեան կայսրութիւնը եւ Վենետիկեան հասարակապետութիւնը: Այս պատերազմը պիտի որոշէր Օսմանեան Կայսրութեան գերիշխանութեան հարցը, Միջերկրականեան ծովուն մէջ: Այս պատերազմով շահագրգռուած էին գրեթէ եւրոպական բոլոր պետութիւնները, բայց մասնաւորապէս Վատիկան, որ ոչ միայն ուղղակի կ՚օգնէր այլ կ՚աշխատէր միջամտութիւններ ապահովել յօգուտ Վենետիկեան Հասարակապետութեան:

Այսպէս, գործօն դեր կատարեցին պատերազմին սկիզբը Իննովկենտ Ժ. Պապը (1644-1655) եւ իր յաջորդը՝ Ալեքսանդր Է.: Այս վերջինը, 1661ին՝ կոչ ուղղեց կաթոլիկ վեհապետներուն, որոնցմէ մէկն է Լուի ԺԴ. (1643-1675) Ֆրանսային թագաւորը:

Պատերազմի սկիզբը Ֆրանսացիք կ՚օժանդակէին Վենետիկցիներուն, գաղտնի զինուորական օգնութեամբ, վասնզի Լուի ԺԴ. եւ անոր նախարարը Մազարին (մ. 1661) ծրագրած էին Օսմանեան Կայսրութեան ահեղ զօրութիւնը ջլատել ու այս նպատակով ծրագրած էին, իմէջ այլոց, գրաւել Եգէական Արշիպեղագոսի կղզիները ու փակել Միջերկրականը թուրքերուն առջեւ: Միւս պետութիւնները՝ Սպանիա, Իտալական երկիրները, Գերմանիա եւ ուրիշներ նոյնպէս շահագրգռուած էին այս պատերազմով:

Արեւելքի մէջ գործող կաթոլիկ եկեղեցականներն ալ եռանդուն կերպով կը գործէին Արեւելքի քրիստոնեաներուն մէջ, ազատագրութեան յոյսեր ներշնչելով:

Աղեքսանդր Է. (1655-1667) Պապին եւ Լուի ԺԴ. թագաւորին գործակալները 1660ական թուականներուն կապեր հաստատած էին Սուրիոյ երեք եկեղեցիներու

վարիչներուն՝ Անտիոքի Յունաց պատրիարք եւ Հալէպի Ասորի Յակոբեաններուն Անդրէաս կաթողիկոսին հետ: Ասոնք արդէն գաղտնի դիմումներ կատարած էին Աղեքսանդր Է. Պապին եւ Լուի ԺԴ.ի, անոնց ներկայացնելով իրենց ժողովուրդին անտանելի վիճակը:

Այս միջոցին, 1663ին, Թուրքիա Վենետիկէն զատ պատերազմի մէջ էր Հունգարիոյ հետ եւ երկու բանակ ղրկած էր ու կը սպառնար Գերման եւ Ալան քրիստոնեաներուն: Քաղաքական այս մթնոլորտին մէջ Օսմանեան Կայսրութեան հայ եւ յոյն ազգաբնակչութեան վերնախաւերն սկսան քայլեր առնել՝ իրականացնելու իրենց ազատագրութիւնը:

Ասիկա կ'ապացուցուի 1666ին Տոմենիկեան Հ. Օթոմանի կենսագիր Հ. Պուլգարինին տուած մէկ հաւաստիքով թէ, այդ թուականին «Հայ ազնուական» մը Հայյունական միացեալ ապստամբութեան ծրագիրով իբրեւ պատուիրակ Փարիզ կը հասնի Հ. Օթոմանի հրաւիրելու՝ որպէսզիան Արեւելքի դժգոհ ժողովուրդներուն գլուխը անցնի, Մէհմէտ Դ.ի (1648-1687) բանակներուն դէմ կռուելու համար:

Հ. Պուլգարին կը գրէ որ «այս միջոցներուն Փարիզի մէջ մի Հայ ազնուական, որ հանճարեղ եւ մեծ հաստատամտութեան տէր մարդ էր, եկաւ հայր Օթոմանի մօտ՝ զայն խրախուսելու համար Արեւելեան Կայսրութիւնը վերականգնելու յանձնարարական նամակներով, որոնք գրուած էին Աղեքսանդրիայի յոյն պատրիարքին եւ անոր ընդհանուր տեղապահ Կոզմա Մորիկ Պալիոլոգի կողմէն, որ Արեւելքի քրիստոնեայ վերջին կայսրերու արքայական արքունիքէն էր: Ան անկարելի չէր համարեր այս բանին յաջողութիւնը, եթէ անոր օգնէին լատին զինուած ուժերը, յունածէս պատրիարքներու եւ եպիսկոպոսներու անունով զայն վստահեցնելով որ Յունաստանի նահանգները եւ Հայաստանի մեծագոյն մասը, որոնց մեծամասնութեամբ քրիստոնեայ բնակչութիւն ունին եւ թրքական փոքրաթիւ զօրքով կը պահուին, կը թօթափեն Օսմանեան լուծը եւ թագաւոր կը հռչակեն զինքը: Ան կը յայտնէր որ Աղեքսանդրիոյ Պատրիարքին դիտումն էր եթէ կարողանար համաձայնութեան գալ յունաց միւս եպիսկոպոսներուն հետ, շարժման մէջ դնել Մոսկօֆները, Վալախները, Եթովպիացիները (այսինքն) ամբողջ կիսաշխարհը, Օսմանեան Կայսրութեան զանազան մասերէն ներս խուժելու համար:

Բայց ո՞վ էր այս Հ. Օթոմանը, որուն վրայ այսպէս յոյս կը դրուէր: Ան ծագումով թուրք Տոմինիկեան կրօնաւոր մըն էր, որ Սուլթան Իպրահիմի (1630-1648) որդին եւ Սուլթան Մէհմէդ Դ.ի (1648-1687) եղբայրը կը համարուէր կամ իբր այդպիսին կը ներկայացուէր քաղաքական աշխարհին՝ Օսմանեան Կայսրութեան թշնամի եւրոպական պետութիւններու կողմէ:

Հ. Օթոման, որը 1645ին, վեց ամսուայ եղած ատեն գերի ինկած էր Մալթայի ասպետներուն ձեռքը, իր դաստիարակութիւնը եւ կրթութիւնը ստացած էր Մալթայի վանքերէն մէկուն մէջ, 1660-6 թուականներուն:

Հռոմի մէջ եղաւ փիլիսոփայութեան ուսանող եւ այդ ժամանակէն իր առջեւ

բացուեցաւ քաղաքական ասպարէզը։ Կարտինալ Անտոն Բաղբերինին, որ Ֆրանսական կուսակցութեան ներկայացուցիչն էր պապական Արքունիքին մէջ Մազարինի ծանօթացուցած էր կրօնաւոր եղած այս «օսմանեան իշխանը»։ Մազարին մտածեր էր Լուի ԺԴ.ին առաջարկել՝ Հայր Օթոմանը օգտագործել Սուլթանին դէմ ծրագրուող պատերազմին մէջ։ Եւ այսպէս այդ ժամանակ, երբ մանաւանդ Գանտիայի պատերազմն ալ խանդավառած էր խաչակրութեան տրամադրութիւնները։ Հ. Օթոման Փարիզ հասեր էր 1665 Յունուարի վերջերը, եւ դարձեր էր օրուան «հերոս», վասնզի Եւրոպական դիւանագիտութիւնը իր քաղաքական հաշիւներուն համար՝ Օսմանեան գահուն օրինաւոր տէր եւ ժառանգ դարձնելով Հ. Օթոմանը, Եւրոպայի կաթոլիկ պետութիւնները անոր միջոցով պետական հարուած տալ կ'ուզէր Սուլթան Մէհմէդ Դ.ի իշխանութեան եւ անով գոնէ թուրքերուն ուշադրութիւնը Կրետէէն այլուր դարձնել, եւ թրքական ճնշումէն փրկել քրիստոնեայ բանակը։

Երբ այսպէս նոր խաչակրութիւն մը կը սպասուէր Արեւելքի մէջ, մէկ օրէն միւսը յոյն-հայկական ազատագրութեան շարժման ղեկավարներուն կողմէ Հ. Օթոմանը կը նկատուէր այն անձը որ պիտի գլխաւորէր այն աշխատանքը՝ որուն անպայման պէտք է մասնակցէին Ռուսաստանի եւ Վրաստանի թագաւորները։

Խաչակրական շարժման համար կազմուած այս ծրագիրը, որ հայ ազնուական մը Փարիզ տարած էր, յաջողութեան գրաւական մը ունէր, որ էր Աղեքսանդրիոյ պատրիարքական փոխանորդ Կոզմա Պալիոլոգը որ Բիւզանդական կայսերական սերունդէն էր կրնար մեծ դեր կատարել քան ազնուական հայը, եւ թերեւս անոր համար էր որ անիկա Հ. Օթոմանի հետ յարաբերութեան մտած էր, Յոյն եւ Հայ միացեալ ապստամբութեան մասին բանակցութիւններ կը վարէ, ինչպէս կը հասկցուի Կոզմա Պալիոզի եւ Հ. Օթոմանի ուղղած մէկ նամակէն, ուր Կոզմա իր ծառայութիւնը կը տրամադրէ Հ. Օթոմանը թագաւոր ճանչցնելու համար, ու Ռուս եւ Վրացի թագաւորներուն խաչակրութեան մասնակցելու հրաւէր ուղղելու խորհուրդ կուտայ ու ինքն թեկնածու կը ներկայանայ այդ դեսպանութեան ու ասոր համար Հ. Օթոմանի հաւանութիւնը կ'ուզէ, ինչ որ այս վերջինը կուտայ։

Պալիոլոգ իր կատարած բանակցութիւնները Հ. Օթոմանի հետ կը բացատրէ Փարիզէն 25 Նոյեմբեր 1666ին գրած նամակով։ Ինչպէս ուրիշ անթուական նամակով մը։ Այս նամակները կը հաստատեն թէ բանակցութիւնները կատարւած են Մոսկուայի, Իբերիայի եւ Եթովպիոյ թագաւորներուն եւ Վարաքիոյ ու Մոլտաւիոյ իշխաններուն հետ։ Կոզմա Պալիոլոգ պատրաստակամութիւն կը յայտնէ Աղեքսանդրիայի, Անտիոքի եւ Երուսաղէմի երեք պատրիարքներէն նամակներ տանիլ Մոսկուայի եւ Իբերիոյ թագաւորներուն, եւ նամակներ կը ղրկէ Եթովպիոյ թագաւորին, որպէսզի ան գրաւէ Եգիպտոսը։

Նոյնպէս կը տեսնուի որ Վալաքիոյ Վոյվոտի որդին Գրիգոր Վասիլի, 8

Դեկտեմբեր 1666ին Մարտիլիայէն գրած է Հ. Օթոմանի, որ ինքն մտադիր է ընկերանալու Կոզմա Պալիոլոգին՝ Ռուսիա երթալու համար։

Աղեքսանդրիոյ Պատրիարքը, որուն ներկայացուցիչներն էին Կոզման եւ «հայ ազնուականը» Կոզմա արդէն վարած էր նախնական բանակցութիւնները Զարին արքունիքին հետ, երբ Մոսկուա գացած էր Անտիոքի Մակար Պատրիարքին հետ, Փոքր Ասիոյ, Պարսկաստանի, Վրաստանի եւ Աստրախանի ճամբով, ու հասած էր հոն 1666 Նոյեմբեր 12ին։

Ուստի ծրագրուած դեսպանութիւնը Պայիսիոս Պատրիարքէն լուրի կը սպասէր Մոսկուա մեկնելու եւ առաջարկուած խնդիրը կատարելու համար։

Պէտք է շեշտել թէ յոյները մեծ կարեւորութիւն կուտային Ռուսաստանի մասնակցութեան Յունաստանի ազատագրութեան, իբր կրօնակիցներու եւ 1576ին կը կարծէին թէ յոյները, պուլկարները, սերպերը միշտ պատրաստ էին զէնք առնելու ընդդէմ թուրքերուն, անոնց ստրկութենէն ազատելու եւ Զարին իշխանութեան ենթարկելու համար։ Իսկ ԺԷ. դարուն հաւատք ունէին այս ազգերը թէ պիտի փրկուէին բռնակալութենէն եւ այս նպատակով գաղտնի յարաբերութիւններ կը մշակէին Ռուս արքունիքին հետ։

Այսպէս, 1651ին, Կ. Պոլսոյ Պարթենիոս Բ. (1648-1651) եւ 1657ին Պարթենիոս Գ. (1656-1657) պատրիարքները թուրքերու կողմէն կախաղան հանուած են իբր դաւաճան Ռուսիոյ Զարին հետ յարաբերութիւններ ըրած ըլլալուն համար։

Ասով հանդերձ Եւրոպայէն ալ յոյսերնին չէին կտրած եւ հոն ալ կը դիմէին, թէեւ ինչպէս միշտ՝ ի զուր։

Յոյներու հետ Հայերն ալ, Ռուսերուն նախապատուութիւն կուտային, եւ ատոր փաստն է այն որ նոր Ջուղայի հայկական առեւտրական ընկերութիւնը եւ Ռուս Պետութիւնը, առեւտրական պայմանագիր կը կնքէին 1667ին եւ հաստատուն հիմերու եւ լայն ուղիներու վրայ կը դնէին տնտեսական կապերը եւ ամուր հող կը պատրաստէին անոնք քաղաքական կապերու համար։

Ռուսիա այս քաղաքականութեան կը յարէր Թուրքիոյ յարձակողական դիմումներուն իտես։

Ռուսաստան նոյնպէս հակաթուրք տարրերը օգտագործելու պէտք ունէր։ Հայերը, դառնացած թուրքերէն՝ պարտաւոր էին յարելու Ռուսիոյ եւ հետեւաբար յունաց ուղղութեան հետեւելու։

Դժբախտաբար չլուսաբանուած կը մնայ թէ ծրագրուած դեսպանութիւնը ղրկուա՞ծ է։ Հետաքրքրական է միայն Հ. Պուլգարինի յիշատակած «հայ ազնուական»ին ինքնութիւնը։

Այս մասին միայն լոյս կը սփռէ 25 Նոյեմբեր 1666 թուակիր Կոզմա Պալիոլոգի իտալերէն նամակը Ֆրանսայի նախարար Գոլպէռի ուղղուած։ Հոն կը յիշուի թէ Կոզմայի հետ Փարիզ կը գտնուէր Ղազի Մուրատ կամ Հաճի Մուրատ անուն հայ մը, որ կարելի է նոյնացնել «հայ ազնուական»ի հետ։ Կոզմա Պալիոլոգ կ'ըսէ

թէ ամբողջ Թուրքիայի մէջ հանրածանօթ մարդ էր։ Ան Գանտիայի մէջ ազատած էր Ֆրանսացի բազմաթիւ գերիներ եւ Սուլթանը կը ճանչնար զայն։ 1683ին գրուած ինքնագիր յիշատակարան մը, ուրկէ կը հասկցուի որ Հաճի Մուրատ Բաղեշեցի էր եւ կը կոչուէր նաեւ «Մահտեսի Շահմուրատ», որ կը թուի վաճառական էր եւ հաւանօրէն Հայաստանի խօճաներու պատուիրակն էր։

1666ին, Փարիզի մէջ կը ներկայանայ Հ. Օթոմանին, զայն խրախուսելու համար, Արեւելեան կայսրութիւնը վերականգնելու համար, վստահելով որ Օսմանեան Կայսրութեան յոյները եւ հայերը եթէ օգնութիւն գտնեն՝ կը թօթափեն Օսմանեան լուծը եւ թագաւոր կը հռչակեն Հ. Օթոմանը, որուն գործը պիտի ըլլար ներքին ապստամբութեամբ եւ արտաքին աջակցութեամբ տապալել Օսմանեան Կայսրութիւնը եւ վերականգնել Արեւելեան Հռոմէական Կայսրութիւնը։

Հ. Օթոման, այս ծրագիրը կը յայտնէ Փարիզի Վենետիկեան դեսպան Մարգ-Անտոնին որ, կը յանձնարարէ շարունակել բանակցութիւնը։ Դեսպանը, ապահով հնարաւորութիւններու վրայ հիմնուած արեւելքցիներուն ծրագիրը կը կապէ Գանտիայի պատերազմին հետ, եւ բանակցելով իր կառավարութեան եւ Հռոմի հետ, կ'առաջարկէ Հ. Օթոմանին դնել Նաւատորմի գլուխը ճակատագրական հարուածը փորձելու համար Արեւելքի մէջ, յօգուտ Գանտիայի եւ ամբողջ քրիստոնեաներուն։

Յետոյ այս ծրագիրը վերջնական ձեւ կը ստանայ Հռոմի մէջ, ինչպէս մանրամասն կը պատմէ Հռոմի Վենետիկեան դեսպան Անտոն Կրիման՝ Վենետիկի Ծերակոյտին իր ուղղած 14 Ապրիլի 1668ի նամակին մէջ, ուր կը տեսնուի թէ այս ծրագիրը ուրիշ բան չէր եթէ ոչ Օսմանեան գահուն վրայ նստեցնել Մահմետական Սուլթանի մը տեղ Քրիստոնեայ Կաթոլիկ Սուլթան մը, ինչ որ շատ երերուն եւ անգործնական ձեւ մըն էր Արեւելքի քրիստոնեաներուն փրկութեան համար, վասնզի անվրէպ քրիստոնէութիւնը ընդունող այդ թուրք Սուլթանը պիտի սպաննուէր։

Դժբախտաբար անփառունակ վախճան մը ունեցաւ Հ. Օթոմանի վեհապետութիւնը իբր Արեւելեան Հռոմէական Կայսր, վասնզի Գանտիա ինկաւ, ձախողութեան մատնելով այս ծրագիրը։

Անյայտ կը մնայ թէ ի՞նչ եղաւ արեւելեան պատուիրակներու կապը Հ. Օթոմանի հետ։

Միայն ծանօթ է դեսպանը Գրիմանի մէկ հաղորդագրութիւնը որ կ'ըսէ թէ Հ. Օթոման յարաբերութիւններ ունեցած է յունական պատրիարքներու հետ եւ թէ յոյն ներկայացուցիչներէն Կոզմա Պալիոլոգ իր կապերը կը պահէր իրեն հետ։

Գալով հայ պատուիրակ Մահտեսի Մուրատի, քիչ մը աւելի տեղեկութիւն ունինք։

Հ. Օթոման Հռոմէն մեկնելէ առաջ ստացած է Փարիզի Վենետիկի դեսպան Մարգ-Անտոն Ջուստենեանին մէկ նամակը (10 Մայիս 1668), ուր կը տեսնուի թէ

«հայազգի իշխանը» կը շարունակէ խօսիլ ու գրել, բայց իր գործունէութեան արդիւնքը չերեւնար, իսկ նամակի վերջը կ'ըսէ «ձեր բարձրութեան կը ղրկեմ հայ իշխանին մէկ նամակը»:

1669 Սեպտեմբեր 6ին, Գանտիա ինկաւ վերջ դնելով Արեւելքի մէջ Հ. Օթոման ծրագիրներուն հետ կապուած յոյսերուն, վասնզի գործնական արդիւնք չէին ներկայացներ կատարուած ձեռնարկները, որոնք կը մնային դիւանագիտական բանակցութիւններու ծրագիրին մէջ, եւ չէին կրնար հասնիլ դրական արդիւնքի մը: Վասնզի թուրքին դէմ կռուողները՝ Վենետիկ եւ Վատիկան իրարու հետ հաշտ չէին, եւ Վենետիկ նոյնիսկ անջատ հաշտութիւն կնքել կը խորհէր թուրքերուն հետ:

Փարիզի պապական նուիրակը՝ Բարջելինին, Վատիկանի գրած 5 Յուլիս 1669 թուակիր նամակին մէջ կը հաղորդէր որ Ֆրանսայի արտաքին գործերու նախարար Տը Լիոնը գանգատ էր յայտներ այս մասին, թէ Պապը եւ Վենետիկի Ծերակոյտներուն հետ «լուրջ գործերու մասին կը բանակցին Մեծ Վէզիրին հետ անձամբ՝ Հայր Օթոմանի մասին եւ տհաճութիւն յայտներ է որ վստահութիւն չեն ունեցեր այդ մասին Ֆրանսան իրազեկ պահելու»:

Խնդիրը, այն չէր թէ ինչքան հիմնաւոր էին Լուի ԺԴ.ի կասկածները Վատիկանի եւ Վենետիկեան ծերակոյտի նկատմամբ, այլ այն թէ Կրետէական պատերազմի վերջին օրերուն դաշնակիցներու յանձնարարութիւնները պղտորած էին հանդէպ Հայր Օթոմանի: Սխալած չենք ըլլար եթէ ըսենք որ Լուի ԺԴ.ի կասկածները իր դաշնակիցներէն ուրիշ բան չէին, եթէ ոչ պատերազմի մօտալուտ վախճանին հետ կապուած մտահոգութիւններուն արտայայտութիւնները, իր սեփական շահերը անպայման ապահովելու համար:

Լուի ԺԴ. կասկածներ ցոյց տալով հետագայի համար հող կը պատրաստէր, որպէսզի յաղթութեան պարագային կարենար ինպաստ իրեն շահագործել յաղթանակը, Բիւզանդիոնի կայսերական գահուն վրայ բարձրացնելու համար Պարպոնեան իշխան մը, փոխանակ Հայ Օթոմանի, իսկ հաշտութեան պարագային կ'ուզէր հեղինակաւոր ձայն ունենալ, եւ կարենալ պաշտպանել ֆրանսական վաճառականութիւնը՝ մրցակից Վենետիկի դէմ:

Ռուսիոյ պատերազմին մասնակցութիւնն ալ ֆրանսական եւ ռուսական պետութիւններու շահերուն բախում կը ստեղծէր, վասնզի Ֆրանսա եւ Ռուսիա Կ. Պոլսոյ կը ցանկային, ինչ որ Հայր Օթոմանի ծրագիրը կը վտանգէր:

## Թ. ԴԱՄԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԺԶ. դարուն Արեւելքի կացութեան դաոնութեան վրայ գաղափար մը տալու համար, մանաւանդ բացատրելու համար թրքական խժդժութեանց սաստկութիւնը՝ բաւական է ըսել թէ պարսիկ եւ թուրք պետութիւններու միջեւ նախընտրութիւնը ընելու փորձած են հայերը, ինչպէս նաեւ բնակակից ուրիշ ժողովուրդներ, որպէս են քրիստոնեայ վրացիք եւ մահմետական քիւրտերը։

Նախապատուութիւն տրուած է պարսիկ պետութեան որ, արդարեւ, Շահ Ապպաս Ա.ի (1587-1628) գահակալութենէն ետք՝ Թուրքիոյ վրայ առաւելութիւններ ունէր։

Շահ Ապպաս իբր վեհապետ, Պարսկաստանի համար վերանորոգիչ առաջադրութիւններով արժանի եղած է «Մեծ» տիտղոսին։ Եթէ իր ուղղութիւնը շարունակուած ըլլար իր յաջորդներէն, այսօր Պարսկաստան Ասիական խաւարին մէջ շողացող աստղ մը պիտի ըլլար։ Միայն իր անխտրականութիւնը, որ իսլամ եւ քրիստոնեայ հպատակներու միջեւ ստեղծել աշխատած է, այդ մոլեռանդութեան դարերուն մէջ՝ մեծ քայլ մըն էր, որ ոչ մէկ մահմետական վեհապետ իրմէն առաջ եւ ոչ ալ իրմէն ետքը առած էր։ Նոյնպէս Ասիական վեհապետներուն մէջ միակն էր որ ըմբռնած էր որ պետութեան մը զարգացման եւ ուժին գլխաւոր աղբիւրն երկրին տնտեսական բարօրութիւնը եւ անկախութիւնն է։

Այս պատճառով, թրքական բռնութիւններէն եւ կեղեքումներէն նեղուած մահմետական քիւրտերէն եւ քրիստոնեայ հայերէն ու վրացիներէն կրօնական եւ աշխարհական ներկայացուցիչներ, 1590ին գաղտնի գացին Պարսկաստան եւ խնդրեցին Շահ Ապպասէն որ զինեալ միջամտութիւն ընէ եւ զիրենք փրկէ թրքական բռնութիւններէն։

Այս դիմումը ըրած ատեն անոնք հոտառութիւնը ունէին թէ Շահ Ապպաս 1590ի նուաստացուցիչ դաշնագիրը ջնջելու եւ իր պարտութեան վրէժը լուծելու կը պատրաստուէր։

Շահ Ապպասի դիմող պատուիրակութեան եւ Պարսկաստան ապաստանող հայերուն մէջ էին Դիզակի Մելիք Շահնազարը եւ Քզտաղի Մելիք Հայկազը, ինչպէս նաեւ Դիզակի չորս գիւղերը եւ Ագուլիսի Դաշտ գիւղին բնակչութեան երեք չորրորդ մասը։

Ասիկա ապացոյց մըն է թէ մարդիկ անտանելի պայմաններու հետեւանքով յուսահատ, երբեմն աներեւակայելի յիմարութիւններու ալ կրնան մղուիլ։

Այս կարգի յիմարութիւն մըն էր Վրաստանի Սիմէոն Թագաւորին (1558-1600) անգլիացի Ճէնքինսընի կատարած դիմումը՝ հայ ներկայացուցիչի մը Շամախի

ղրկելը, անկէ խորհուրդ մը առնելու համար, թէ ի՞նչ ընելու էր Կովկասի քրիստոնեաները մահմետական լուծէ փրկելու համար։

Ճէնքինսըն մետաքսը անգլիական վաճառք մը դարձնելու ծրագիրը իրագործելու համար 1553ին Ռուսիա ղրկուած էր եւ ապա՝ 1556ին իր գործակիցը Շանսէլօզը Մոսկուա ձգելով ինք Պուխարա գացած էր։ Ան մանրամասն տեղեկագիր մը ղրկած էր Եղիսաբէթ Թագուհիին՝ Շիրվանի, Շամախի եւ Կովկասեան Հայաստանի մետաքսի առեւտուրի մասին, սակայն անիկա շատ յուսադրիչ բաներ չէր կրցած ըսել։

Ասով հանդերձ Անգլիացիք, չէին յուսահատած եւ 1561ին զայն կրկին Շամախի ղրկած էին նոր հնարքներ խորհելու համար, մետաքսի առեւտուրը ձեռք անցնելու համար։

Եւ այդ միջոցին էր որ Վրաստանի Թագաւորը անոր խորհուրդին կը դիմէր Քրիստոնեաներու փրկութեան համար։

Ճէնքինսըն, անգլիական նենգամտութեամբ խորհուրդ կուտար դիմելու Ռուսիոյ Իվան Սոսկալի Ցարին (1533-1584) ինչ որ եթէ յայտնուէր ապահովաբար թուրքերը պիտի գրգռուէին հայերու եւ վրացիներու դէմ եւ զանոնք բնաջնջելու պիտի աշխատէին, ինչ որ ուրախութիւն պիտի պատճառէր անգլիացիներուն, որոնք այդ պարագային դիւրաւ պիտի կարենային մետաքսի առեւտուրին տիրանալ։ Ճէնքինսըն նոյնպէս խորհուրդ կուտայ – նոյնքան նենգ մտածութեամբ մը – դեսպան ղրկել Ռուսիոյ Ցարին Չերքէզներու երկրէն անցնելով, վստահեցնելով որ Վրաց թագաւորին դիմումը նկատի պիտի առնուէր Ցարին կողմէ։

Սիմէոն թագաւորին հայ պատուիրակը կը ներկայացնէ Վրաստանի տագնապալի վիճակը, վասնզի ան «փակուած… երկու վայրագ բռնութիւններու եւ ահարկու վեհապետութիւններու միջեւ… շարունակ պատերազմած էր անոնց դէմ»։

Սիմէոն թագաւորին հայ պատուիրակը Ճէնքինսընէն խնդրած էր նաեւ ինք իր դարձին, Ցարին խօսի Վրաստանի օգնութեան հասնելու համար։

Ճէնքինսըն, որ նպաստաւոր առիթը կ՚օգտագործէ մետաքսի առեւտուրին մէջ անգլիացիներուն ձեռնարկներուն խոչընդոտ հայերը եւ վրացիները մէջտեղէն վերցնելու համար եւ որպէսզի անպատճառ յաջողի այս ծրագիրը, իր գործակիցներէն Էտ. Գլիրքը կը ղրկէ մետաքսի առեւտուրի կայաններէն մէկը եղող Արտազ քաղաքը, անոր պաշտօն տալով որ անցնի Վրաստանէն եւ ներկայանայ Սիմէոն թագաւորին, որպէսզի իր յանձնառութիւններուն համար [ձեռք ձգէ] Վրաստանէն ապահով անցքը եւ հոն առեւտուր ընելու ազատութիւն։ Այս հրամանը ստանալէն ետք յանձնարարուած էր անմիջապէս ետ դառնալ։

Ինչպէս կ՚երեւի, բարեբախտաբար ոչ հայերը ոչ ալ վրացիները անգլիացիին նենգաւոր եւ խիստ վտանգաւոր խորհուրդին չեն հետեւած, կամ արթննալով եւ կամ արգիլուելով որեւէ կերպով։ Գլիրք չէր կրցած Վրաստան մտնել, իր խառնակիչները կատարելու եւ վրացիները ու հայերը վտանգելու համար։ Այնպէս

որ անգլիացիք առիթ չունեցան այս յաջողութիւնը ձեռք բերելու։
Այսպէս անգլիացիք, մետաքսի շահաբեր առեւտուրը ձեռք անցնելու համար հայոց եւ վրացիներու դէմ խանգարիչ ծրագիրէն բաւական տարիներ ետք, շատ մեծ յոյս չունեցան յաջողութեան, վասնզի 28 Ապրիլ 1569ին, Անգլիական ներկայացուցիչը՝ Շաբմանը, Ղազախէն կը տեղեկագրէ իր կառավարութեան թէ՝ հայերու եւ վենետիկցիներու առեւտրական յարաբերութիւնները ընդհատել կամ խզել կարելի չի թուիր։ Հետեւաբար անգլիացիք չկրցան Սիմէոն թագաւորի դիմումը ինպաստ իրենց օգտագործել, բայց վրացիք եւ հայերն ալ չկրցան արթնամտութիւնը ունենալ բոլորովին հրաժարելու վտանգաւոր ձեռնարկներէ։
Արեւելքի Քրիստոնեաներու դժնդակ եւ անտանելի կացութիւնը, որ յուսահատական էր եւ միակ յոյսը որ անոնք ունէին՝ երեւակայական տեսիլքներով խոստացուած Արեւմուտքէն գալիք օգնութիւնն էր, որուն կը սպասէին միամտօրէն։
Ասոր համար Վրաստանի Սիմէոն թագաւորը դիմած էր Անգլիացի ներկայացուցչին՝ Ճէնքինսընի, միեւնոյն ատեն եւ թերեւս աւելի կանուխ, ամէնէն ուշը 1561ին, դիմած պէտք է ըլլայ ուրիշ եւրոպական պետութիւններու։
Ասիկա աներկբայ է, վասնզի իրենց վիճակից եւ աւելի դժբախտ կացութեան մէջ գտնուող հայերը, որոնք իշխանութիւն մըն ալ չունէին, նման փորձեր ըրած էին։
Մենք տեսանք թէ հայ երեւելիները, ինչպէս 1551ին Ստ. Սալմաստեցի Կաթողիկոսը թուղթով Աբգար Դպիրը արքայազունի վկայականով փութացուցին դարձեալ Վենետիկ ու Հռոմ, ինչպէս նաեւ ուրիշներ ալ ղրկեցին Եւրոպա նոյն նպատակով։
Ուրեմն հայերն ալ Եւրոպայէն ակնկալեցին փրկութիւնը, ինչպէս Վրաց թագաւորը։
Որչափ որ ալ, ոչ վրացական վաւերագիրները եւ ոչ ալ հայկականները յայտնի առընչութիւն մը եւ կապ մը ցոյց չեն տար երկու ազգերու դիմումներուն միջեւ, սակայն կը տեսնուի որ, գէթ լռելեայն կապ մը կար հայկական [եւ] վրացական ձեռնարկներուն միջեւ կամ գէթ ժամանակի եւ պարագաներու ազդեցութիւնը երկու ազգերը մղած էր անջատաբար խորհելու՝ իրենց անտանելի տանջանքներէն փրկուելու համար։
Եւ ուրիշ միջոց չկրնալով խորհիլ, օգնութիւն մուրացած են Եւրոպական ազգերէն, որոնց քրիստոնէական եւ ասպետական ոգին դժբախտաբար կաղած էր։
Տեսանք թէ Հռոմի Պապերը ի՞նչ դիրք բռնեցին հայոց դիմումներուն հանդէպ։ Հնազանդութեան (այսինքն կաթոլիկացում) պահանջեցին առանց դրական օգուտ մը ապահովելու, նեղը մնացած հայ կաթողիկոսները հաւատալով Հռոմի խոստումներուն, որոշ է թէ ձեւականօրէն Հռոմի մօտենալ փորձած են, ազգին քաղաքական կեանքին վերականգնումին համար, եւ առաջ եկած է երկար

ժամանակամիջոցի համար կեդծիքի հոլովոյթ մը։ Հայերը Հռոմը խաբել աշխատած են, ինչպէս Հռոմ հայերը խաբել աշխատած է, խոստանալով բաներ՝ որ այլեւս ընելու անկարող էր, ինչպէս խաչակրութիւնները կազմակերպել, քրիստոնեայ պետութիւնները թուրքերու դէմ հանել եւայլն։

Նոյն կացութեան մէջ էին նաեւ վրացիք, որ հայոց պէս Եւրոպայէն կ՚ակնկալէին փրկութիւնը։

Դժբախտաբար, ինչպէս չկայ հայ-վրացական գործակցութեան շօշափելի փաստերը, չկայ նաեւ վրացիներու Եւրոպայի մէջ կատարած ձեռնարկներու մասին հաստատուն տուեալներ։ Բայց, հայերու եւ վրացիներու գործելակերպին մէջ նմանութիւններ այնքան շատ են, որ գործակցութեան մը շօշափելի փաստեր կրնան համարուիլ։ Հայերը յայտնապէս զինեալ ապստամբութիւն չեն ըրած, այլ հաւանօրէն գաղտնի գործած են, իսկ Վրաց թագաւորը Սիմէոն յայտնապէս զէնքով կը մաքառէր թուրքերուն դէմ 1555ին Քիւրտ եւ Պարսիկ զինադադարէն ետք, երբ Քարթլին, Կախիթը, Շիրուանը, Ղարաբաղը եւ Արարատեան աշխարհը Պարսկաստանի կցուեցան, իսկ Իմէրէթը, Կարսը, Արտահանը ենթարկուեցան թուրք տիրապետութեան։

Սակայն թուրքերը ասով չգոհացան եւ սկսան աւերի ենթարկել ամբողջ Հարաւային Կովկասը։ Սիմէոն թագաւորը, Պարսկաստանի վրայ յոյս դնելով, Երեւանի Մահմուտ խանի եւ Գանձակի Իմամ Ղազի խանի հետ միացած զէնքով դիմադրեց թուրքերուն։ Պարսիկներու այս օժանդակութիւնը՝ ընծայուած կովկասեան ազգերու, մեծ դեր կատարած է վրացիներուն հետ հայերու ալ հայեացքը դէպի պարսիկները աւելի բարեկամական ըլլալու։

Ապացոյց՝ Ջուղայի հայերուն ընդունելութիւնը Շահ Ապպասին եւ հայոց ու վրաց դիմումը Շահին, որ գայ զիրենք ազատէ թուրքերուն բռնութիւններէն։ Հետեւաբար որոշ է թէ հայերը եւ վրացիները միեւնոյն կերպով կը խորհէին այդ ժամանակամիջոցին։ Նոյն ձեռնարկները կ՚ընէին։

Ասկէ անխուսափելի է հետեւցնել թէ վրաց թագաւորին թուրքերու դէմ զինեալ մաքառումին մէջ հայերը մաս ունեցած են եւ զէնքով օգնած են վրաց թագաւորին։

Փոխադարձաբար Սիմէոն թագաւորն ալ հայոց դիմումներուն աջակցութիւն ընծայած է, եւ ինքն ալ նմանօրինակ դիմումներ ըրած է քրիստոնեայ Եւրոպային, հայոց գործակցութեամբ։ Արդարեւ պատմութիւնը արձանագրած էր իր մէկ դիմումը 1578ին Հռոմի Պապին։ Այդ գրաւոր դիմումին մէջ, Սիմէոն թագաւոր, թուրքերու դէմ իր մղած ապարդիւն կռիւները կը պատմէ ու կը խնդրէ Հռոմի օգնութիւնը քրիստոնեայ ժողովուրդներուն։

Շատ հաւանական է որ առընչութիւն մը կայ Էջմիածնի Թադէոս Բ. Կաթողիկոսին (1571-1579) Եւրոպա առաքելութիւնը եւ Սիմէոն թագաւորի ձեռնարկին միջեւ։ 14 Օգոստոս 1596ին Թիֆլիսէն Սիմէոն թագաւորը, Սպանիոյ Փիլիպպոս Բ. թագաւորին (1555-1598) աշխարհաբար հայերէնով գրած է թուղթ մը, ուր

կ՚ըսուի «այսքան ժամանակ թուրքի հետն ի մէջ նեղութեան կայանք, այս ժամանակիս կու հայինք թէ քրիստոնէից ի թագաւորութիւն ի ոտք ելանէ եւ շարժի, հիմի մեծ գոհութիւն եւ անմահ թագաւորին Յիսուսի Քրիստոսի, որ ետ զօրութիւն եւ հզօր կարողութիւն քոյին մեծ թագաւորութեան, իշխանութեանդ եւ քոյին սիրելի մայիսդաղ զիշատ Իմբերատորին որ զմեզ մեծարեց եւ ուղարկեց մեզ թուղթ ու գիր սիրոյ միաբանութեան, վասն յամենայն հաւատացելոց ի Քրիստոս, որ զայն այլազգի եւ թշնամի հաւատոց զթուրք ազգս իմիջոց վերացելոյ: Նայ ես, Սիմէոն խանս, Կիւրճիստանու, Ալեքսանդր խան Լուանդինոյ, Շահ Աբբաս երեքունքս միաբանեցանք, եւ խորհուրդ եւ թատպիր արարանք, որ մենք այլ հիմակուց ի վեր առաջ գանք եւ զթուրքին գլուխն կոտրենք եւ զսուրբն յԵրուսաղէմ եւ զՔրիստոնեային ի թուրքին ձեռաց ազատեմք»:

Նամակին շարունակութեան մէջ, Սիմէոն կրկին կը շեշտէ որ գերմանական Կայսրն է եղեր «որ առաջն մեզի թուղթ եւ խօսք ուղարկեց եւ զմեզ ոտից վերականգնեց, վասն քրիստոնէից համար»:

Ասով հանդերձ Սիմէոն վստահ չէ, Ռոտոլֆ Բ. կայսրը հաստատ կը մնայ իր խօսքին վրայ, առաջին առթիւ լքելով քրիստոնեայ զինակիցները հաշտութիւն կը կնքէր թուրքին հետ: Ուստի Սպանիոյ Փիլիպպոս թագաւորի կը դիմէ եւ կը խնդրէ որ ան «Մայիսդաղ չեզարին մէջք լինի եւ չթողու, որ չեզարը թուրքի հետն հաշտութիւն անէ որ մեզի նեղութիւն չիգայ»:

Սիմէոն շատ վստահ չէ նաեւ Աբբասի վրայ, որ 1590ին խաղաղութեան դաշինք կնքած էր Թուրքիոյ հետ եւ պատերազմական ուժը ուղղած Ուզպէք-թաթարներու դէմ: Ուստի կը դիմէ Սպանիոյ թագաւորին եւ կը խնդրէ «Դարձեալ Փերսիանի թագաւորն ապսպրես... որ միաբան լինեմք եւ լաւ բան հոգանք վասն Քրիստոնէից»:

Այս դիմումնագիրին հայերէնի հետ յունարէն թարգմանութիւնն ալ ղրկեր էր Սիմէոն թղթաբերով մը որ պաշտօն ունէր պատասխանն ալ բերելու, որպէսզի ինքն ու իր երկիրը ուրախանայ: Հայերէն եւ յունարէն գրուած ըլլալը մեկնելի է Սպանիոյ մէջ հայերու եւ յոյներու գոյութիւնը, իսկ վրացերէն գիտցող դժուար էր գտնել:

* * *

Սիմէոն թագաւոր մէկ կողմէն կռուած ատեն միւս կողմէն ալ քրիստոնեայ աշխարհին դիմումներ ընելէ չի դադրիր: Վրաստանի Կախէթի շրջանին Ալեքսանդր թագաւորն ալ ճիգեր կը գործադրէ: Ան Մոսկուայի թագաւորին հետ բանակցութեան կը մտնէ եւ 1585ին խոստում կը ստանայ հովանաւորութեան, թէեւ այս խոստումին դրական արդիւնքը չէ տեսնուած:

Սիմէոն թագաւորի դիմումին ալ դրական արդիւնք մը չէ տրուած, հակառակ

անոր որ Սիմէոն շատ ընդարձակ սահմանի վրայ կատարած է իր դիմումը: Կ'ենթադրուի որ բանագնացը Սիմէոնի գիրը մինչեւ Սպանիա տանող եղած է Փերզատա անուն Միսիանի Գետաթաղ գիւղացի այն անձը, որ ինքնագիր նօթագրութիւն մը ունի իր ուղեւորութեան ուղեգիծին մասին, ուր կարգով կը նշանակէ իր այցելած երկիրները, որոնք են. Թուրքիա, Ռումանիա, Լեհաստան, Գերմանիա, Իտալիա, Միջերկրականի կղզիները, Սպանիա եւ ապա Անգլիա, ուրկէ կ'անցնի Ֆրանսա: Ուղեւորութիւնը սկսած է 1586ին եւ աւարտած է 1604ին Ֆրանսա: Անժխտելի ըլլալով հանդերձ այն ենթադրութիւնը, կարգ մը նշաններ կան ինպաստ այս ենթադրութեան, մասնաւորապէս այն տեղը ուր կը շեշտէ թէ «զՖիլիպ թագաւոր աղէկ քրիստոնեայ է» եւ «հայկական ազգին խիստ կ'ուզէ» իր գրութենէն կը հասկցուի թէ Փիրզատա 1602ին պահ մը Եւրոպայէն Արեւելք (Հալէպ) եկած է:

Սիմէոն տոկուն կամք ցոյց տուած է եւ ինչպէս կ'երեւի աւելի իրապաշտ, Եւրոպայի դիմելով հանդերձ կռիւը երբէք չէ դադրեցուցած:

Ան 1585ին գրաւած է Լոռին եւ 1586ին Գորիս ամրոցը ու անվիատ կռուած է յանկարծական յարձակումներով: Երբ Կախիթի թագաւորը Աղեքսանդր Մոսկուայի հովանաւորութիւնը կ'ապահովէր ու 1585ին կը ստանար հովանաւո-րութեան խոստումը, հայերն ալ իրենց կարգին, չէին դադրիր աշխատելէ:

Ամենայն Հայոց Կաթողիկոսը, 1593ին նուիրակ կը ղրկէ Վենետիկ քահանայ մը, Յակոբ Համթեցին, որ ջերմ ընդունելութիւն կը գտնէ քաղաքին հայ վաճառա-կաններուն կողմէ: Ան Վենետիկէն կ'անցնի Հռոմ ու դարձին իր հետ կ'առնէ կարգ մը գրութիւններ ուղղուած Շահ Աբբասի, վրաց Աղեքսանդր եւ Սիմէոն թագաւոր-ներուն ու վրաց կաթողիկոսին:

Այս գիրերէն երկուքը յղուած էին Հռոմի Պապէն եւ Հռոմի գերմանական դեսպանէն:

Այս գիրերը Էջմիածնի նուիրակին յանձնուած էին Հռոմի մէջ «հայոց պաշտպան» տիտղոսով կոչուած Սանդա Սերվերենի Կարտինալէն, որ ինչպէս տեսնուեցաւ, միջնորդի դեր կատարած էր Աբգարի Սուլթանման որդւոյն եւ Ազարիա Ջուղայեցի Կիլիկիոյ Կաթողիկոսի բանակցութիւններուն ժամանակ:

Յակոբ քահանայ ոչ միայն կը կատարէ իրեն տրուած նամակները տանելու հոգը, այլ կը ստանձնէ նամակներուն պատասխանները Եւրոպա հասցնելու յոգնութիւնն ալ: 1596ին Շահ Աբբասէն նոր գիրեր վրաց Աղեքսանդր եւ Սիմէոն թագաւորներուն յանձնելու պարտականութիւնը կը ստանայ:

1597ին Տ. Յակոբ, կրկին Հռոմ է: Այս անգամ բերած էր վրաց թագաւորներուն եւ վրաց պատրիարքի գիրերը, ուղղուած Հռոմի Պապին եւ գերման կայսեր դեսպանին: Տ. Յակոբ քահանայ Ամրեցի, Վենետիկի Դուքսին տուած մէկ բացատրութենէն կը տեղեկանանք թէ ի՞նչպէս Շահ Աբբաս եւ Վրաստանի թագաւորները կը խնդրեն Կղեմէս Ը. Պապէն (1592-1605) որ աղօթէ որ իրենք

կարենան յաղթել թուրքերուն եւ արեւելքի քրիստոնեաներու վիճակը թեթեւցնել, ինչպէս նաեւ արեւմտեաններն ալ յաղթեն թուրքերուն։

Վենետիկի Դուքսին այս քահանան կուտայ նաեւ կարգ մը տեղեկութիւններ։ Կը նկատէ թէ Շահը 26 տարեկան երիտասարդ մըն է, եւ ունի 80.000 ձիաւոր, չհաշուելով հրացանակիրները, իսկ Վրաստանի Սիմէոն թագաւոր 45 տարեկան է, ունի 25 տարեկան քաջ որդի մը, կարող է կազմել 40.000նոց բանակ մը եւ ունի նաեւ հրացանակիրներ։

Տ. Յակոբ, իր առաքելութեան միջոցին Հռոմի մէջ իջեւանած է Սանդա Սերվերենիի քով, եւ պաշտպանած է Վենետիկի հասարակապետութիւնը, ծածուկ լրտեսի առաջնորդութեամբ կ'անցնի Վան ու Հալէպ։ Հալէպի մէջ կը ներկայանայ Վենետիկի Պայլին եւ պաշար ու ստակ կը ստանայ։

Սիմէոն թագաւոր 20 տարի մաքառեցաւ թուրքերու դէմ։ Հայերը, ինչպէս կը տեսնուի հաւանօրէն գործակցեցան, ինչպէս նաեւ դիւանագիտութեամբ եւ դիմումնագիրերով։

Թուրքերու եւ Ղազախ ցեղին դէմ զինեալ դիմադրող Արղութեանները կապուած էին Վրաց Սիմէոն թագաւորին, որ Կուրի բերդի գրաւումէն ետք վտանգ նկատուեցաւ թուրքեր[ուն], որոնք որոշեցին մեծ բանակով մը [յարձակիլ], առին Վրաստանը եւ գերի առին ապստամբ Սիմէոն թագաւորը, որ վերջապէս ընկճուեցաւ։

# Ժ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԺԷ. ԴԱՐՈՒՆ ՎԵՐՋԻՆ ԿԷՍԻՆ ՄԷՋ ԱՐԵՒՄՈՒՏՔԻ ՄԷՋ ՀԱՅԵՐՈՒ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԵԱՆ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

Գանտիայի գրաւումը (1669 Սեպտ. 6) կ'անէացնէր Հայ եւ Յոյն տարրերու եւ ուրիշ Արեւելեան քրիստոնեաներու գործակցութեամբ Արեւելքի քրիստոնեաներու ազատագրութեան ծրագիրը, որ իբր թէ պիտի իրագործուէր Վենետիկի հասարակապետութեան եւ անոր գաղտնապէս օգնող Ֆրանսայի գործակցութեամբ եւ արեւելեան ազգերու գործօն մասնակցութեամբ:

Ծրագրին գլխաւոր հիմը, Օսմանեան Սուլթանական գահուն վրայ քրիստոնեայ կաթոլիկ թուրք մը – իբր թէ Օսմ. Կայսրութեան ընտանիքէ – բարձրացնելու նպատակն էր, որ եթէ իրագործուէր Արեւելքի համար մեծ յեղաշրջում մը պիտի ըլլար աշխարհամասի մը համար՝ որ մահմետական տիրապետութեան տակ կը գտնուէր:

Բայց ինչպէս տեսնուեցաւ յաջողութիւնը շատ տարակուսելի էր, վասնզի շատ դժուար էր որ մահմետականները համակերպէին իսլամութիւնը լքած եւ քրիստոնեայ եղած վեհապետի մը հնազանդիլ: Նոյնպէս յաջողութիւնը կասկածելի էր, վասնզի դաշնակիցները իրարու նկատմամբ անկեղծ չէին:

Արեւելքի քրիստոնեաները միամտօրէն հաւատացած են այս ձեռնարկին եւ պատրաստ եղած են կռուելու թուրքերուն դէմ: Յոյներէն, Հայերէն եւ Մոլտա-վալաքներէն զատ այս շարժումին մասնակցած են նաեւ պուլկարները, որոնք յուսադրուած ըլլալ կը թուին, վասնզի մեծ պատրաստութիւններ տեսած էին:

Պետրոս Փարզէվիչ (1612-1674) անուն պուլկար մը, աստուածաբան ու հինգ լեզու խօսող – որոնց մէջ նաեւ հայերէն – ուսումնական, պերճախօս եւ Եւրոպական ազդեցիկ շրջանակներու ծանօթ անձ մը, կաթոլիկ քահանայի մը հետ արտասահման ղրկուեցաւ, յանձնարարուած՝ Մոլտավիոյ իշխանէն՝ Սերպերու եւ Պուլկարներու համար օգնութիւն խնդրելու: Ան քանի մը անգամ այցելեց Աւստրիոյ եւ Լեհաստանի արքունիքները եւ Վենետիկ: Ամէն տեղ մեծ պատիւով ընդունուեցաւ եւ պատուանշաններով քաջալերուեցաւ, բայց զինեալ օգնութեան ոչ մէկ խոստում կրցաւ ձեռք բերել:

Վերջապէս, Պապին դիմելու համար գնաց Հռոմ, ուր մեռաւ 1674ին, աղօթելով որ «Ամենակարողը սիրտերը բոցավառէ ու այնքան հիմնաւոր յոյսերու հաւատքը չի կորսուի»:

Աւելի վերջը (1681-1688), երբ թուրքերը պատերազմի մէջ էին Աւստրիոյ, Լեհաստանի, Վենետիկի եւ Ռուսիոյ դէմ, Պուլկարները կարծելով թէ իրենց

փրկութեան ժամը հասած է, Արեւմտեան Պուլկարիոյ մէջ, Փարզէվիչի գործակիցներուն առաջնորդութեամբ՝ ապստամբեցան, բայց որեւէ դրական օգնութիւն չստացան քրիստոնեայ պետութիւններէն եւ ըմբոստութիւնը դիւրաւ խեղդուեցաւ արեան ճապաղիքներու մէջ։

Պուլկարները, Սերպերը, Մոլտա-վալաքիները, խօսքով քաջալերուեցան առանց դրական օգնութիւն մը գտնելու։ Նոյնպէս հայերը փրկութիւն յուսացած են, սակայն ոչ մէկ օգնութիւն գտած են, որով գործնական արդիւնք մը չունեցաւ։

Արդէն Հայր Օթմանեան ծրագրով Եւրոպացիներու կողմէ հայերուն եւ յոյներուն տրուելիք ազատութիւնը քաղաքական ազատութեան իմաստ չունէր, ինչպէս կը հասկցուէր Հռոմի Վենետիկեան դեսպան Անտոն Գրեմանի 14 Ապրիլ 1668 թուակիրով Վենետիկի Ծերակոյտին ուղղած նամակէն, որ խտացումն է Հայր Օթմանի ծրագրին, որ կը կայանար «յոյներուն, քրիստոնեաներուն եւ լաւ թուրքերուն զէնք տալ, որպէսզի անոնք աջակցին իր գահակալութեան». ինչ որ կը նշանակէր թէ Օսմանեան կայսերական գահին վրայ փոխանակ մահմետական Սուլթանի մը՝ պիտի նստէր քրիստոնեայ կաթոլիկ սուլթան մը, ինչ որ ոչ հնար էր եւ ոչ ալ քրիստոնեաներու ազատագրութիւնը կ'ապահովէր։

Ասով հանդերձ, հայերը աջակցութիւն ընծայելու ջանքեր ըրած էին, ինքն ալ խոստանալով կռուիլ Վենետիկի եւ Ֆրանսայի հետ, ի նշան իրենց դժգոհութեան։ Պատուիրակութիւն մը ղրկեցին, որուն գլուխն էր Հաճի Մուրատ կամ Շահ Մուրատ վաճառականը, որ իբր հայ խօճաներու ներկայացուցիչը՝ Աղեքսանդրիոյ յունաց պատրիարքին դիմած էր եւ անոր փոխանորդ Կոզմա Պալիոլոգին հետ 1665ին Փարիզ գացած ու ներկայացած է ապագայ Արեւելեան կայսրութեան թեկնածու՝ Հայր Օթմանի, որուն վրայ շատ լաւ տպաւորութիւն չէին ըրած Հաճի Մուրատի խօսքերը։

«Հայուն զրոյցը կարող չէր այնքան մեծ ապահովութիւն ներշնչել Հայր Օթմանին տարողութեան վրայ, նկատի առնելով որ նման խոստումներ խօսքի սահմանէն անդին չէին անցներ». սակայն անոր ներկայացուցած խիստ ազդեցիկ նամակները եւ գործի յաջողութեան համար յայտնուող բուռն փափաքը, որ կ'արտայայտուէր մինչեւ իսկ արիւն թափելու եւ կեանք զոհելու պատրաստակամութեամբ, Հայր Օթմանին այնքան լաւ յոյսեր կը ներշնչէր որ ան խնդիրը կը յայտնէր Վենետիկի դեսպան Մարք Անտոնին որ իրեն կը թելադրէր «շարունակել բանակցութիւնները ամենայն արագութեամբ»։

Դժբախտաբար Գանտիայի անկումէն ետք, քանիհինգ տարիներու ջանքերը ապարդիւն դարձան եւ նոր վհատութիւն պատճառեց Արեւելքի քրիստոնեաներուն, որոնք սակայն շարունակեցին Եւրոպայի օգնութիւնը ակնկալել։ Այնպէս կը տեսնուի որ 1670-1685ին, յոյները եւ հայերը միասին կրկին հրապարակ կուգան, իրենց հետ ունենալով թրքական տիրապետութենէն դժգոհ ասորի եւ վրացի ժողովուրդները։ Թէեւ վաւերագիրներ կը պակսին, սակայն գոնէ որոշ է

որ այդ շրջանին ալ կատարուած ձեռնարկներուն մասնակցած է Հաճի Մուրատը, որ, ինչպէս կը տեսնուի, մինակ չէր իր ջանքերուն մէջ եւ իրեն հետ ունէր հայ գործակիցներ, որոնց հետ մինչեւ 1683 գործը հետապնդած է:

Հաճի Մուրատ Բաղիշեցի, որ իբր վաճառական կը ներկայանայ, տեսանք թէ գէթ 1666էն սկսեալ Աղեքսանդրիոյ պատրիարքի փոխանորդ Կոզմա Պալիոլոգին հետ Փարիզ էր, որոշ առաքելութեամբ, եւ չէր կրցած այլեւս Արեւելք դառնալ՝ վտանգուելէ վախնալով եւ, հոն աշխատած էր իր գործակիցներուն հետ, վասնզի թէեւ Գանտիա ինկած էր, սակայն Արեւելքի քրիստոնեաները չէին յուսահատած եւ Վենետիկի օգնող Ֆրանսայի թագաւորին՝ Լուի ԺԴ.ի վրայ յոյս դրած էին, եւ ամէն կողմ դիմումներ կը կատարուէր: Այսպէս Մոսկուայի Զարին, Իբերիոյ (Վրաստան), Վալաքիոյ եւ Մոլտավիոյ իշխաններուն եւ Հապէշիստանի հետ բանակցութիւններ կը կատարուէին:

Գանտիայի պատերազմի վերջին տարիներուն, Աղեքսանդրիոյ յոյն պատրիարքին փոխանորդ՝ Պալիոլոգ եւ Հռոմի Մուրատ միասին Փարիզ էին եւ կը մասնակցէին կատարուած բանակցութիւններուն Հայր Օթմանի հետ, որ Ռուս պետութիւնը իր ծրագրին ինպաստ շարժելու աշխատած է ապարդիւն կերպով:

Այս բանակցութիւններուն միջոցին, Պալիոլոգ՝ Հաճի Մուրատը կը ներկայացնէ որպէս բոլոր Թուրքիոյ մէջ հանրածանօթ մարդ, որ կը ճանչնար նոյնիսկ ինքն Սուլթան Մուրատ Դ.: Եւ բարձրացնելու համար զայն, Պալիոլոգ կը հաղորդէր թէ Գատիայի պատերազմին ժամանակ Հաճի Մուրատ ազատած էր բազմաթիւ Ֆրանսացի գերիներ, դրամական փրկանքով:

Հաճի Մուրատ առեւտրական էր եւ պատերազմի ժամանակ ան կողոպուտի ենթարկուած էր Միջերկրականի մէջ վխտացող ծովահէններէն:

Հայերը կը յուսադրուին Ֆրանսայի կողմէ Յիսուսեան քարոզիչներու միջոցաւ, որոնք կը պաշտպանուէին Ֆրանսայի կողմէ: Հայերը ոչ մէկ պաշտպանութիւն կը վայելէին: Իրենց պաշտպանները հայ վաճառականներն էին, որոնց երկրին ընձայած օգտակարութիւնը շատ լաւ գիտէին: Ասոր համար, եկաւ ժամանակ մը որ, պարսիկները մերժեցին կատարել Ֆրանսայի պահանջները, որոնք երկրին վնասակար էին: Գտնուեցան պարսիկ պաշտօնատարներ, որոնք Ֆրանսայի դէմ դիրք բռնեցին եւ ըսին թէ «ինչո՞ւ համար Պարսկաստան արտօնութիւններ պիտի տայ օտար կրօնաւորներու՝ ի վնաս իր այն հպատակներուն, որոնք երկրին օգտակար են ու կը հարստացնեն զայն»: Մինչ այդ, լատին կրօնաւորները աննշան թիւով կը պաշտպանուէին, առանց երկրին օգուտ մը ունենալու:

Պարսկաստանի մէջ վիճակը այս էր, իսկ Թուրքիոյ մէջ կաթոլիկութիւնը տարածելու փորձեր կը կատարուէին Ֆրանսայի եւ Լեհաստանի պաշտպանութեամբ: Եթէ յաջողութիւններ ունեցած են, անոնք կը պարտին այն խաբէութեան որ կը գործադրէին հաւատացնելով թէ հայերը իրենց գերութենէն պիտի ազատին կաթոլիկ Ֆրանսայի եւ Հռոմի ձեռքով: Լուի ԺԴ.ի գործակալները, ամէն կողմ կը

տարածէին թէ «Արեւ Արքան» Արեւելքի քրիստոնեաներու պաշտպանութիւնը ստանձնած էր եւ կը պատրաստուի յարձակելու Թուրքիոյ վրայ եւ ազատել քրիստոնեայ ազգերը:

1660 թուականներէն սկսեալ, այս գաղափարը կը տարածէր մասնաւորապէս կաթոլիկ կղերը: Ասոր առաջին ներշնչեալը եղան Աղեքսանդր Է. Պապը (1655-1667ին) [եւ] Լուի ԺԴ. որ երիտասարդական եռանդով դէմ ելած էր Թուրքիոյ:

Սակայն քրիստոնէական այս եռանդին դէմ կը կանգնէր Ֆրանսայի տնտեսական շահերը, որ Թուրքիոյ հետ հաշտ ապրելուն մէջն էր, մինչեւ իսկ իր դաշնակիցներուն դէմ գործելով: Այս մտայնութեամբ, քիչ մնացած էր որ Լուի ԺԴ. պատերազմէր Թուրքիոյ մէջ, վասնզի Ֆրանսայի Վենետիկի գաղտնի օգնելը գիտնալով, թուրք մեծ Վէզիրը անարգանքով կը վարուէր Ֆրանսայի դեսպանին հետ: Լուի ԺԴ. նոր դեսպան մը ղրկեց պատերազմական նաւերով: Գոլպէռ (ելեւմտական նախարարը) որ դէմ էր խաչակրութեան գաղափարին Ֆրանսական շահերուն հակառակ նկատելով՝ հրահանգ տուաւ Ֆրանսական դեսպանին 1673ին Թուրքիայէն նոր առանձնաշնորհումներ ձեռք բերելով գոհանալ: Այս համաձայնութեամբ խաչակրութեան գաղափարը չէր լքուեր: 1673էն յետոյ, Թուրքիան Եւրոպայէն վտարելու եւ կործանելու ծրագիրը ուժգին կը քարոզուէր, գրաւոր ու բերանացի:

Մասնաւորապէս կը շեշտուէր սա գաղափարը թէ Եւրոպա միացեալ պէտք էր գործեր: Այս ծրագրին մէջ էր նաեւ Արեւելքի քրիստոնեաները կաթոլիկ դարձնելու որոշումը, որուն յարած էր նաեւ Լուի ԺԴ. Արեւ Արքան, որ բազմաթիւ գործակալներ ղրկած էր Արեւելք:

Ամբողջ Արեւելք կը սպասէր Ֆրանսական թագաւորին արշաւանքին որ չկատարուեցաւ՝ վասնզի Գոլպէռ թոյլ չտուաւ որ Ֆրանքօթուրք պատերազմ մը ծագի: Այլ ընդհակառակն Ֆրանսա Թուրքիոյ բարեացակամութիւն ցոյց տալով տնտեսապէս կողոպուտ նախընտրեց: Այնպէս որ Ֆրանսա ձեռնպահ մնաց, երբ նոյն իսկ Լուի ԺԴ.ի գործակալներու քարոզութեան իրականացումը եղող Եւրոպական պետութիւններ միացան՝ թուրքերը ընկճելու համար: Այս նոր դաշնակցութիւնը, որ 1683-1684ին կազմուեցաւ, պետ ունէր Աւստրիոյ Կայսրը: Իր զինակիցներն էին. Աւստրիա, Լեհաստան, Վենետիկ եւ Հռոմի Պապը (Կղեմէս Ժ. 1670-1676): 1683ին, ասոնց միացաւ նաեւ Ռուսիա, որուն երկիրը Լեհաստանի հետ թրքական սպառնալիքի տակ կը գտնուէր:

Այս դաշնակցութեան մէջ գործօն եւ կարեւոր դեր կատարողը եղաւ Լեհաստանի Ժան Սօպիեցքի (1673-1696) թագաւորը: Անոր նպատակն էր թուրքերը փճացնել եւ ասոր համար անհրաժեշտ կը դատէր Օսմանեան պետութիւնը Արեւելքէն ալ հարուածելու համար Պարսկաստանը զինակից ունենալ:

Այս նպատակով, իբր դեսպան Պարսկաստան ղրկեց պարսկահայ սաստիկ թրքատեաց եւ կարող գրիչ Կոմս Պետրոս Ապէտիքը, որ ինքզինք կը ներկայացնէր

Արշակունի թագաւորական տոհմէն սերած։

Իր մեծ հայրը, Ապէտիք Աղա, Քիլիս կը բնակէր եւ կապալառու (միւլթէզիմ) էր թուրքերու՝ Սուրիոյ, Միջագետքի եւ Փոքր Հայքի։ Անիկա կը նահատակուի 62 տարեկանին՝ չիսլամանալուն համար։ Ասոր որդին Մուրատ՝ Պարսկաստան կ'երթայ, բայց ետքը կը դառնայ Հալէպ ուր կը մեռնի։ Մուրատի 12 որդիներէն մէկն էր Մանուկ Ապէտիք, որ Հալէպէն Հռոմ փախաւ եւ Ուրբանեան վարժարանին մէջ ուսում առաւ։

Մանուկը Պետրոսի փոխուեցաւ, բայց կրօնաւոր չեղաւ։ Ան ինքզինքը նուիրեց հակաթուրք պայքարին, որ Եւրոպայի մէջ օրուան նորութիւնն էր։

Այս նպատակով իր առաջին քայլը եղաւ իր մասնակցութիւնը Կղեմէս Թ. (1667-1669) Պապէն Պարսից Շահին ղրկուած պատուիրակութեան։

Պարսկաստանի մէջ համակրութիւնը շահեցաւ Սիւլէյման Թ. Շահին (1666-1694)։ Պատուիրակութեան մէջ էր Մատթէոս Քհն., որ ետքը Նախիջեւանի հայ կաթոլիկ թեմին եպիսկոպոսը պիտի ըլլար։

1680ին Ապէտիք կը հաստատուի Հունգարիա, երբ Վիեննա ցնծութեան մէջ էր թուրքերուն վանած ըլլալուն համար, ինչ որ կը յուսադրէր քրիստոնեայ Եւրոպան թուրքերը Եւրոպայէն դուրս վանելու։

Ուստի կոչ կ'ըլլայ բոլոր քրիստոնեայ պետութիւններուն եւ անոնց զինակից Պարսկաստանի եւս պատրաստուելու։

Ինովկէնց ԺԱ. Պապը (1676-1689) Սպահան կը ղրկէ երկու անգամ Սեբաստիանոս Քնապը, համոզելու համար Շահը որ պատրաստուի։ Մինչեւ իսկ պատգամաւորներ կը ղրկուին Եթովպիա եւ Արապիա։

Հայերը, ինչպէս 1664-1669 շրջանին միայն քաջալերողի դերը կատարեցին Հաճի Մուրատի Աղեքսանդրիա եւ Փարիզ կատարած երթեւեկներով, նորէն 1669էն ետք, նոյն դերին մէջ էին, վասնզի զինեալ ուժ չունէին գրեթէ։ Սակայն այս շարժումին մեծապէս նպաստեցին, վասնզի Եթովպիան, որուն վրայ մեծ յոյսեր դրուած էր, հապէշներու կողմէ տրուած չափազանցեալ տեղեկութիւններու վստահելով՝ անմատչելի էր միւս ազգերուն, վասնզի հոն հայերը միայն ազատ մուտք ունէին։ Կաթոլիկ քարոզիչներու գործունէութենէն զայրացած հապէշները կրօնաւոր եւ աշխարհական օտարականներու մուտքը Հապէշիստան արգիլած էին եւ միայն հայերը ազատօրէն կը մտնէին։

Այդ ժամանակամիջոցին Եթովպիա երթալ ուզող եւրոպացիք, հայու տարազով միայն կրնային մտնել Հապէշիստան։

Անշուշտ այս պատճառով, հայ մը պէտք էր ղրկել հոն իբր պատուիրակ։ Եւ որովհետեւ 1678-1680 թուականներուն Հապէշիստան գացած է Յովհաննէս Թիւթիւնճի, վանեցի Կ. Պոլսոյ նախկին պատրիարքը (1663-1664 եւ 1665-1667) եւ նախկին կաթողիկոս Աղթամարի, շատ հաւանական է որ այս եկեղեցականը գաղտնօրէն պատուիրակ ղրկուած ըլլայ մեզի դաւանակից հապէշներուն զանոնք

թելադրելու համար որ Թուրքիոյ դէմ ելլեն։

Յովհաննէս Թիւթիւնճի, որ իր ուղեւորութիւնը շատ համառօտ նկարագրած է, իր ճամբորդութեան նպատակին մասին երբեք չխօսիր, սակայն շատ հաւանականութիւն կայ որ 1664-1668, 25 տարուան պայքարին ատեն հապէշները դէպի Եգիպտոս խուժել թելադրելու ծրագիրը, որուն թերեւս չէին կրցած համոզել զանոնք՝ անգամ մըն ալ փորձուած պէտք է ըլլայ Ժան Սօպիէցքիի կազմած մեծ դաշնակցութեան մէջ առնելու համար զանոնք։

Անիկա 1670ին Եգիպտոսէն Եթովպիա կ’երթայ, եւ 1680ին կրկին կը դառնայ հոն, անկէ անցնելու համար Իտալիա, ուրկէ յետոյ կ’անցնի Լեհաստան (Կամենից)։

Յովհաննէս Թիւթիւնճի բնաւ կրօնական քարոզչութեան նպատակով չէր կրնար գացած ըլլալ Հապէշիստան, այլ ուրիշ նպատակ մը պէտք է ըլլար։

Ինչպէս տեսնուեցաւ ԺԷ. դարուն վախճանին երբ թուրքերը առաջացած էին մինչեւ Կեդրոնական Եւրոպա եւ հասած՝ Վիեննայի դուռները, սարսափի մատնելով ամբողջ քրիստոնեայ աշխարհը, Եւրոպայի քրիստոնեայ պետութիւնները գաղտնաբար կը բանակցէին իրարու հետ Թուրքիոյ դէմ ընդհանուր ճակատ մը կազմելու համար։ Այդ համադաշնակցութեան մէջ որոշած էին առնել նաեւ քրիստոնեայ Եթովպիան՝ Եգիպտոսի հարաւէն թուրքերը հարուածելու համար։ Նոյնպէս Ռուսիա, որ դաշնակցութեան մէկ անդամն էր, Հապէշիստան ղրկած էր 10 հոգինոց պատուիրակութիւն մը, որուն մէջ անհրաժեշտ կը նկատուի առնել նաեւ հայեր, որպէսզի իբր առեւտրականներ՝ թուրքերու կասկած չներշնչուէր։ Դաշնակիցներու նպատակն էր թրքական բանակները կռնակէն հարուածել՝ Հապէշիստանն ալ ոտքի հանելով։

Այս պատուիրակութեան մասնակից հայերէն մէկն էր, Յովհաննէս Թիւթիւնճի, որ շատ մեծ յարմարութիւն կը ներկայացնէր այս գործին թէ իբր հայ եւ թէ իբր բարձրաստիճան եկեղեցական։ Այս շատ գաղտնի պատուիրակութիւնը կ’երթայ Հապէշիստան։ Իր պաշտօնի հանգամանքը նկատի առնելով է որ ապահովաբար, իր ճամբորդական նկարագրութեան մէջ բացարձակ լռութիւն կը պահէ իր նպատակին վրայ։ Նոյնպէս յայտնի չէ թէ ո՞վ ղրկած է զայն Հապէշիստան։ Կամ պէտք է Լեհաստանի թագաւորը ղրկած ըլլայ, այն ատեն որ (1678ին) ուրիշ պատգամաւորներ կը ղրկէր Կ. Պոլիս, Յակոբ Ջուղայեցի Կաթողիկոսին։ Եթէ ոչ, զինք Հապէշիստան ղրկողները հայեր են, որոնք այս կերպով նպաստ մը կը բերէին Թուրքիոյ դէմ կազմուած դաշնակցութեան, որուն շնորհիւ կը յուսային իրենց փրկութիւնը։

Յովհաննէս Թիւթիւնճի, իր առաքելութեան քաղաքական հանգամանքը իր ուղեւորութեան մէկ քանի տողերուն մէջ ալ կը հետեւցուի։ Թիւթիւնճեան, Եգիպտոս դառնալէն (1680) ետք, կ’երթայ Թոսքան, որուն Մեծ Դուքսին համար կը մաղթէ որ «Աստուած անփորձին երկար կեանք պայծառ պահեսցէ, ի գործօն

ամենայն քրիստոնէից եւ ի գթութիւն, տառապեալ հայոց ազգին պանդխտելոց»:

Երեք տարի վերջը, այսինքն 1683ին, այս եկեղեցականը կը գտնենք Փարիզ: 1680-1683, այս երեք տարուան միջոցին անհաւանական չէ որ Թիւթիւնճի նոյնիսկ գացած ըլլայ իբր կամաւոր Լեհական բանակին մէջ, վասնզի յիշատակարան մը, իրենց համար կը գրէ. «Այս վարդապետն եղեւ գլուխ ազգին Ֆրանկաց եւ եկն իվերայ թուրքին», երբ գիտենք թէ Ժան Սօպիէցքի, 1683ին երկու ամիս տեւող Վիեննայի պաշարման ատեն կայսեր օգնութեան գացած էր 50.000նոց բանակով մը, որուն 5000ը հայեր էին, հաւանօրէն լեհահայ:

Ճիշդ ճակատագրական այս պահուն յիշատակարանով մը Փարիզի մէջ երեւան կուգայ նաեւ Բաղեշեցի Մահտեսի Հաճի Մուրատ, որ կը պատմէ 2 Փետր. 1683ին իր Վերսայլ այցելութիւնը, Յովհ. Թիւթիւնճի, Միսիանցի Զաքարիա վրդ. Հալէպցի Ղազարոսի որդի Յովսէփը, Էրզրումցի Յովհ.ի որդի Գրիգորը, Ղազան Կէլիրցի Մուրատը, Երեւանցի Ոսկան վրդ.ի քեռորդին Սողոմոնը կը տեսնայ, ինչպէս նաեւ Ֆրանսացի թագաւորը եւ թագուհին, որդին եւ եղբայրը, եղբօրը կինը եւ նախարարապետը, պալատները եւ անոնց պերճանքը: Հաճի Մուրատ այս յիշատակարանին մէջ Յովհ. Թիւթիւնճիի հետ յարաբերութիւն ունենալը կը յայտնէ: Միւսներէն միայն մէկը՝ Ոսկաններու Երեւանցիի քեռորդին Սողոմոնը, ծանօթ է իբր Ոսկանի տպագրական գործին աշխատող: Միւսներն ալ հաւանական է որ գործօն ծառայութիւն մը ունեցած ըլլան Հաճի Մուրատի եւ Յովհ. Թիւթիւնճիի հետ եւ նոյնիսկ կրնայ ենթադրուիլ թէ Մուրատ Թիւթիւնճիի պէս ինքն ալ իբր պատուիրակ ծառայած ըլլայ եւ գործօն դեր մը կատարած ըլլայ 1669 մինչեւ 1678: 9 տարի ո՞ւր ըլլալը եւ ի՞նչ ըրած ըլլալը, յայտնի չէ:

Հաճի Մուրատ Փարիզ ապաստանած ըլլալը Յովհ. Թիւթիւնճիի եւ ուրիշ եկեղեցական եւ աշխարհական հայերու հետ եւ բաներ մը ընելու աշխատիլը, ցոյց կուտայ թէ իրապէս իրարանցում մը կար արեւմտեան հայոց մէջ:

Այս շարժումին անհաղորդ չէին արեւելեան հայերը, վասնզի Յակոբ Կաթողիկոս Ջուղայեցի (1655-1680), որ 1655ին կաթողիկոս եղած էր մինչեւ 1680ին Պոլսոյ մէջ իր մահը, լրջօրէն զգաղած էր այս խնդիրով Մուրատին առաջին անգամ Փարիզ հասնելու ատենէն (1664), երկու անգամ Եւրոպա անցնիլ առանց յաջողելու:

Հուսկ ուրեմն 1678ին, երրորդ անգամ ճամբայ ելած էր եւ յաջողած Պոլիս հասնիլ, մելիքներու հետ համախորհուրդ իբր պատուիրակ Եւրոպա երթալու, իրեն հետ ունենալով Իսրայէլ Օրին: Եւ իբր յաջողութեան գրաւական Յակոբ Ջուղայեցի Կաթոլիկ եկեղեցւոյ դաւանութիւնը տուած էր, 1676 Ապրիլ 2ին Աւագ Հինգշաբթի օրը Պիսկոպօ կրօնաւորին եւ հայ Կոմս Ապէտիքի խօսքերէն համոզուելով թէ իր ազգին եւ եկեղեցիին փրկութիւնը ասով ձեռք պիտի բերէր:

Սօպիէցքի որ թունդ կաթոլիկ մըն էր կրօնական այս պահանջը դրած էր արդէն: Եւ թերեւս Ջուղայեցի այս լրացուցած ըլլալուն համար Լեհաստանի թագաւորը 1678ին Պոլիս ղրկած էր պատուիրակութիւն մը Հայոց Կաթողիկոսի

հետ բանակցելու համար։ Այդ պատուիրակութեան մէջ անշուշտ հայեր կային, Լեհաստանի հայերէն։

Յակոբ Ջուղայեցի Կաթողիկոսի մահէն (1680 Օգոստ. 14) ետք շարունակած են յարաբերութիւնները Եղիազար եւ Նահապետ կաթողիկոսներու հետ, որոնք նոյնպէս իրենց ազգին փրկութիւնը ապահովելու համար՝ կաթոլիկոսութեան յարելու միտում ցոյց տուած են։

Պիսկոպօ եւ Պետիկ Յակոբ Կաթողիկոսի հաւանութիւնը ստանալէ ետք Վիեննա գացին, Աւստրիոյ կայսեր դիմելու համար ու այլեւս Լուի ԺԴ.ի չդիմեցին, տեսնելով անոր թրքասիրութիւնը եւ համեւրոպական միութեան մէջ մտած չըլլալը։

Պրոկոպօ 1678ին Հռոմ կ'երթայ աշխատելու համար, սակայն նոյն տարին կը մեռնի, առանց ոչինչ ընելու, մինչ հայերը միամտօրէն իրենց փրկութեան գործը բարեյաջող վիճակ մը ստացած ըլլալ կարծելով՝ նոյն տարին (1678) Էջմիածնի մէջ ժողով մը կը գումարեն ուր կ'որոշեն որ Յակոբ Կաթողիկոս Ջուղայեցի անձամբ երթայ Հռոմ։

Արդարեւ կաթողիկոսը ճամբայ կ'ելլէ, սակայն, ինչպէս տեսնուեցաւ, միայն Կ. Պոլիս կը հասնի եւ կը վախճանի (1680)։

## ԺԱ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՅԱԿՈԲ ԿԱԹ. ՋՈՒՂԱՅԵՑԻ
## (1598 Ապրիլ – 1660 Օգոստոս)

Կրետէի շուրջ մղուած պատերազմը (1645-1609) ինչպէս տեսնուեցաւ, հայերն ալ շարժման մէջ դրաւ միւս արեւելեան քրիստոնեայ ժողովուրդներու կողքին։

6 Սեպտ. 1609ին, Գանտիայի անկումէն ետք, Թուրքիոյ դէմ պայքարը դարձեալ շարունակուեցաւ նոր դաշնակցութեամբ մը, որուն մասնակցեցան Աւստրիա, Լեհաստան, Ռուսիա, Վրաստան եւ Պարսկաստան։

Հայերու կողմէն միայն Հաճի Մուրատ Բաղեշեցին անհատաբար բերաւ իր աջակցութիւնը հակաթուրք այս պայքարին։ Ան վաճառական մըն էր, որ յայտնի չէ թէ ինչպէ՞ս մասնակցած է այս ձեռնարկին։

Հաճի Մուրատ երեւան եկաւ այն օրերուն, ուր Լուի ԺԴ.ի եւ իր շրջապատին յղացումը եղող թրքական կայսրութիւնը քրիստոնեայ պետութեան մը վերածելու գաղափարը իրագործելու համար քայլեր կ՚առնուէին. Հաճի Մուրատ Բաղեշեցի, ո՞վ գիտէ ի՞նչ ներշնչման տակ կը մղուէր քաղաքական գործունէութեան, Արեւելքի մէջ ամենէն շատ թիւ ունեցող Օրթոտոքս յունաց հետ։ Աղեքսանդրիոյ Յունաց Պատրիարքին հետ աշխատելով եւ Հայր Օթմանի – Սուլթան Մուրատի ենթադրական եղբօրը – ինքն ալ իր ծառայութիւնը ընծայելով։

Հաճի Մուրատ, իբր առեւտրական ու Հայաստանը եւ Արեւելքը մօտէն ճանչցող զարմանալի է որ հայոց ալ ապստամբութեան տրամադրութիւն կը յայտնէր Արեւելքի ապագայ քրիստոնեայ կայսր՝ Հայր Օթմանի, որ կասկածով կը լսէ զինքն։

Ինչի՞ վստահելով ան կուտար այս հաւաստիքը՝ անյայտ կը մնայ, ինչպէս նաեւ անյայտ է թէ հայ գործակիցներ ունէ՞ր թէ ոչ։

Հաւանօրէն միայն ինքն էր հայը որ այս գործին մէջ նետուած է եւ գործնապէս գոնէ պատերազմական գերիներու ազատագրութեան՝ դրամով նպաստած է։

Գանտիայի անկումէն ետք այս խորհրդաւոր վաճառականը չէ դադրած աշխատելէ եւ կազմուած նոր հակաթուրք համադաշնակցութեան – որուն գլուխ կը գտնուէր Աւստրիոյ Ռոտոլֆ Կայսրը իրեն հետ ունենալով Լեհաստանի, Ռուսիոյ եւ այլ իշխանութիւններ – օժանդակած է։

Հաճի Մուրատ հաւանօրէն խումբ մը եկեղեցական եւ աշխարհական հայերու հետ գացած էր Փարիզ, Լուի ԺԴ.-ի կառավարութեան դիմումներ ընելու համար, երբ ուրիշ հայեր՝ Լեհաստանի թագաւոր Ժան Սօպիեցքիի հետ կը գործակցէին,

5000 լեհահայ զինուորներով։

Այս օրերուն է որ Յովհաննէս Թիւթիւնճի կը ղրկուի Հապէշիստան, հաւանօրէն այս երկիրն ալ միացնելու համար հակաթուրք դաշնակցութեան։

Ինչպէս կը տեսնուի, հայեր կային որոնք կը հաւատային թէ ազգին փրկութիւնը քրիստոնեայ ազգերը պիտի ընծայէին, կրօնական համոզումները շահելու պայմանով։ Բայց կային նաեւ ուրիշ հայեր, որոնք հակառակ էին այս ուղղութեամբ զիջողութիւններու, եւ Հռոմի հետ բանակցութիւններուն դէմ էին։

Մասնաւորապէս Ջուղայի վաճառական-խօճաները, որոնք պարսիկ Շահերու պաշտպանութիւնը կը վայելէին ու ունէին նիւթապէս բարօր կեանք մը, դէմ էին անոնց դէմ գործելու։ Անոնց հետ էին հայ եկեղեցականներէն մաս մը, որ վտանգ կը տեսնէր պարսիկներու դէմ գործելուն։

Յակոբ Ջուղայեցի, Նոր Ջուղայի Ամենափրկչեան վանքին մէջ պատրաստըւած էր Խաչատուր Կեսարացի Մեծ Վարդապետին ձեռքին տակ ու ետքը անցած էր Էջմիածին, ուր աջ բազուկը եղած է Փիլիպպոս Աղբակեցի Կաթողիկոսին (վախճանած 25 Մարտ 1655ին), որ ԺԷ. դարու լուսաւոր դէմքերէն մէկն է, իբր վերանորոգիչ մը։

Ջուղայեցիի, Փիլիպպոս Կաթողիկոսի Կ. Պոլիս եւ Երուսաղէմ ճամբորդութեան պատճառով երկամեայ բացակայութեան ատեն, իբր տեղապահ՝ Էջմիածինը կառավարած էր։

Անոր վախճանումէն ետք, 1665ին ինք ընտրուեցաւ Կաթողիկոս, երբ արդէն տասը տարիէ իվեր սկսած էր Եւրոպայի Վենետիկի Հասարակապետութեան կողմէ Թուրքիոյ դէմ պատերազմ մը, որուն գաղտնօրէն կ'օգնէր Ֆրանսուա, եւ ինչպէս տեսնուեցաւ, Արեւելքի քրիստոնեաները իրենց վիճակին բարւոք[ելու համար]։

1669ի պարտութեամբ, ինչպէս տեսնուեցաւ, քրիստոնեաները չէին յուսահատած ու դեռ կը հաւատային թէ պիտի փրկուէին, վասնզի այս գաղափարը կը ներշնչէին Հռոմի կրօնաւոր գործակալները։ Անոնք, ազատութեան յոյսը ներշնչելով՝ Արեւելքի քրիստոնեաները Հռոմի հնազանդեցնել կը նկատէին։ Իսկ Ֆրանսացի գործակալները, Հռոմի նպատակներուն հետ կը հետապնդէին իրենց նիւթական շահերը, ու կ'աշխատէին տիրանալու Արեւելքի վաճառականութեան, հայոց օգնութեամբ։

Այսպէս, 1665ին, երբ Ֆրանսա Պարսկաստանի համար առեւտրական ընկերութիւն կազմեց, աշխատեցաւ ապահովել հայոց բարեացակամութիւնը, անոնց՝ Ֆրանսայի պաշտպանութիւնը ցոյց տալով եւ ազատագրական յոյսեր ներշնչելով, ինչպէս 1670 Օգոստոս 30ին տիւ Մանս կրօնաւորի Սպահանէն Գոլպէռի ուղղած մէկ գիրը որուն մէջ ան կ'ընէր թելադրութիւններ Ֆրանսական վաճառականութեան զարգացման վրայ։

Հայերը այս կեղծիքներէն խաբուած կ'երեւին։ Ի մէջ այլոց խաբուած էր Յակոբ

Ջուղայեցի, որ մանաւորապէս Լուի ԺԴ.ի եւ Գոլպէռի եւ հայ տպագրութեան մեծ փափաք ունէր ազգին լուսաւորութեան: Յակոբ Ջուղայեցի, այսպէս տարուեցաւ, Արեւմուտքի աջակցութեան ապաւիններու գաղափարով եւ իբր առաջին քայլ Հռոմի մերձենալու՝ իր կաթողիկոսանալէն չորս տարի ետք, 1659ին, Առաքել Շոռոթեցի «Բոպիկ» կաթոլիկամիտ վարդապետը եպիսկոպոս ձեռնադրեց Ֆահրատի վրայ եւ Հռոմ ղրկեց յայտնելու համար իր յարումը Հռոմի եւ երկու տարի ետքը (1661), կաթոլիկ միսիոնար Պօղոս Քրիմալլի լատին կրօնաւորին հետ նոյն Առաքել Շոռոթեցին ղրկեց Վենետիկ, հասարակապետութեան ներկայացնելու համար քաղաքական խնդրանքներ, որոնց յաջողութեան՝ Աղեքսանդր Է. Պապը (1655-1661) հաւաստիք կուտար, եթէ կաթոլիկ եկեղեցիին հնազանդէին:

Առաքել Շոռոթեցի, 1662 Յունիս 10ին Վենետիկի տօճին կը ներկայանայ, հաւատալով թէ մօտ կապեր ունէր պարսից արքային հետ եւ կրնար յաջողիլ Պարսկաստանը դաշնակից դարձնել Վենետիկի, եթէ իրեն տրուէր դեսպանի հանգամանք ու Շահին տրուելիք նուէրներ:

Յակոբ Ջուղայեցի, պատերազմի ամենատաք օրերուն, 1664ին, Հռոմէ Պարսկաստան եկող Պիսկոպօ Քարպելի միջոցաւ գաղտնի գիր մը գրեց Հռոմ իր կաթոլիկութեան յարած ըլլալուն համար եւ 1666ին Հռոմ ղրկեց իր եղբօր որդին՝ Մանուէլը, Ս. Հռիփսիմեանց եւ Գայեանեանց նշխարներով, որոնք ձեռք անցնելու շատոնց կը ցանկային կաթոլիկները, եւ որոնք՝ զանոնք գողնալու փորձեր ալ ըրած էին:

Այս ձեռնարկները, որոնք գաղտնի կը կատարուէին Յակոբ Ջուղայեցիի կողմէ, վտանգաւոր կը նկատուէին ողջմիտ խօճաներու եւ կարգ մը եկեղեցականներու կողմէ:

Ուստի անոնք ընդդիմանալ սկսան Կաթողիկոսին եւ 1664ին Հոկտեմբերին, Երեւանի մէջ ժողով մը գումարեցին մասնակցութեամբ ժամանակակից 27 յայտնի եկեղեցականներու, եւ Յակոբ Ջուղայեցին դատապարտեցին ամբաստանութիւններով, որուն 16րդը սա էր. «զի սնապաշտ բացայօդ բանիւ պատճառեաց ի դէմս աշխարհին ի Ս. Երուսաղէմ գնաց եւ գաղտագողի խորհրդեամբ բարձեալ ըստ ինքեան զնշխար Սրբոյն Հռիփսիմայ եւ Գայեանեանց կամէր տանիլ յերկիրն Ֆրանկաց եւ այնու առնուլ բազում զանձն ի նոցանէ եւ զալ օծանել զոմս թագաւոր հայոց ընդդէմ իշխանութեան պարսից»:

Այս ամբաստանագրին մէջ, Յակոբ Ջուղայեցի կը մեղադրէր նախ Հռոմի Պապին ուղղած իր հպատակութեան թուղթին եւ յայտնապէս քաղքէդոնականութեան յարած ըլլալու համար:

Այս ամբաստանութիւնները բոլորովին սուտ չէին, եւ շատ մը փաստեր կան Յակոբ Կաթողիկոսի անկեղծ կամ կեղծ դաւանափոխութեան եւ Հռոմի յարումին:

Նոյնիսկ հաստատուած է թէ 1662ին Հռոմ երթալու համար մինչեւ Զմիւռնիա

գացած է բայց չէ կրցած ճամբան շարունակել, Եղիազարի հերձուածին պատճառով պարտադրուած ըլլալով Էջմիածին դառնալ։

Այս ակներեւ ապացոյցներուն պատճառով 1673ին եւ թերեւս ուրիշ անգամներ ալ կրկնուած են այս ամբաստանութիւնները եւ դժգոհութիւնները վասնզի խօճաները կը խորհէին թէ երբ պարսիկները գիտնային այս բանակցութիւնները՝ հայերը կրնային վտանգուիլ։

Ասոր համար թէ Թուրքիոյ եւ թէ Պարսկաստանի դէմ դիրք բռնելու դէմ էին եւ կը մաքառէին Երեւանի ժողովին անդամներուն պէս, որոնց պետն էր Ոնոփրիոս Վրդ. Երեւանցի։

Այս ժողովին մէջ որոշուեցաւ խնդրել Եղիազար Կաթողիկոսէն, որ ցաւելով «աղճատանաց Ս. Աթոռոյն Էջմիածնայ եւ բոլոր տունս հայոց» յօժարի երթալ կամ Էրզրում կամ Թոգատ եւ կամ ուր որ ինք կամենայ եւ ամէնքը մօտը կոչելով՝ դատաւոր կանգնի եւ լսէ իրենց ամբաստանութիւնները։ Ապահովաբար այդ դէպքին արձագանգն են Զաքարիա Սարկաւագի այն տողերը, ուր կ՚ըսուի թէ, քանի մը միաբաններ, գլխաւորութեամբ «կարգաւոր» մականուանեալ Ոնոփրիոս Վրդ. Երեւանցիի «գրեցին բազում հայհոյանք սուտս» ընդդէմ Յակոբ Կաթողիկոսի եւ Եղիազարը հրաւիրեցին Էջմիածին, խոստանալով անոր տալ Էջմիածնի կաթողիկոսութիւնը։

Բայց Եղիազար չհամարձակեցաւ Էջմիածին երթալ տիրանալու համար ամենայն հայոց կաթողիկոսութեան։ Յակոբ Կաթողիկոսի ուղղութեան հակառակորդներուն բողոքը անլսելի մնաց, վասնզի լատին քարոզիչներ անդադար կը շարունակէին իրենց բրոբականտը շլացուցիչ խոստումներով ու հայերը անոնց կը հաւատային, վասնզի ստեղծուած էր մթնոլորտ մը, ուր արեւելքը կը կապէր Արեւմուտքի, ու անկէ կ՚ակնկալուէր ազգին ազատութիւնը։

Յակոբ Ջուղայեցի հետզհետէ կ՚ընդարձակէ իր գործունէութեան շրջանակը, Հռոմ, Վենետիկ, Վիեննա, Մոսկուա ղրկելով իբր բանագնաց նոյնիսկ լատին վարդապետներ, որոնք Եւրոպա կ՚երթային ու անկէ եկան ուրիշ կաթոլիկ վարդապետներ՝ պարսիկ Շահերը համոզելու համար, սակայն ոեւէ դրական արդիւնք մը չունեցան այս երթեւեկները։

Ասոնք ամէնքը ցոյց կուտան թէ երբ Արեւմուտքի մէջ Հաճի Մուրատ Աղեքսանդրիոյ Յունաց Պատրիարքին հետ կը գործակցէր, Յակոբ Ջուղայեցի ալ անտարբեր չէր ու ինքն ալ ձեռնարկներ կ՚ընէր եւ կ՚երեւի համոզուած էր թէ դաւանափոխ ըլլալով կրնար շահիլ կաթոլիկ աշխարհը։

Այսպէս, Արեւմուտքի մէջ Հաճի Մուրատ, Աղեքսանդրիոյ Յունաց Պատրիարքին հետ հաւատացած էին Եւրոպայէն գալիք բանակներուն, բան մը որ շատ խնդրական էր, քանի պատրաստութիւն չկար։ Իսկ Յակոբ Ջուղայեցի կ՚ուզէր շահիլ Եւրոպան՝ Հռոմի ապահովելով հայոց հպատակութիւնը, ինչ որ նոյնպէս շատ կասկածելի էր, վասնզի հայերը՝ իրենք տեղեակ չէին իրենց անունով

տրուած այս խօսքերուն։

Յակոբ Ջուղայեցի ինկած էր Հռոմի գիրկը, կարծելով թէ ասով ձեռք պիտի բերուէր հայոց ազատագրութիւնը ու ասոր համար, ինքն ալ իր նախորդներէն ոմանց պէս քաղաքական մուրացկանութեան դիմած էր եւ աւելի առաջ անցած էր՝ կաթոլիկութիւնը ընդունելով։

Ջուղայեցի, երբ կաթողիկոս եղաւ 1655ին, Վենետիկի հասարակապետութիւնը, գաղտնի օգնութեամբ Ֆրանսայի, թուրքերու դէմ պայքար կը մղէր Կրետէի մէջ, որոշ նպատակներով, ինքզինքին տալով Արեւելքի քրիստոնեաներուն ազատարարի դերը։ Ան կը պաշտպանէր Արեւելքի մէջ կազմուած սակաւաթիւ համայնքները եւ զանոնք Հռոմի հնազանդեցնելու աշխատող միաբանութիւնները (Դոմենիկեան, Ֆրանչիսկեան, Օգոստինեան, եւայլն), որպէսզի Հռոմի բարոյական աջակցութիւնը իրեն հետ ունենար։

Մասնաւորապէս Ալեքսանդր Է. Պապը (1655-1666) նշանաւոր գործիք մը եղած էր Լուի ԺԴ.ի վարկը բարձրացնելու համար Արեւելքի մէջ՝ իր գործակալներով, որոնք կը տարածէին սա գաղափարը թէ քրիստոնեաները պիտի ազատէին մահմետական լուծէն, Լուի ԺԴ.ի բանակներով։

Կաթոլիկ քարոզիչները, միշտ կը նկարագրէին Արեւելքի քրիստոնեաներու դառնութիւնները եւ յոյսեր կուտային փրկութեան։ 1670 Ապրիլ 6ին Գոլպէռի ուղղած նամակի մը մէջ Ֆրանսայի կրօնաւոր մը կը գրէր թէ «մեր Ֆրանսայի թագաւորը կրնայ փրկել քրիստոնեաները», անշուշտ Ֆրանսայի կապելու համար Արեւելքի տառապող քրիստոնեաները, որ Գանտիայի անկումէն ետք, իրենց յոյսը դրին Ֆրանսայի վրայ, այս քարոզութիւններուն պատճառով։

Ասիկա ակներեւ է, վասնզի կը տեսնենք որ Պոլսոյ Յոյն Պատրիարքը, վերին պետը օրթոտոքսներու, 1672ին Լուի ԺԴ.ի կը ղրկէր Աթէնքի եւ Էտիրնէի մետրապոլիտները Կալվինի վարդապետութիւնը դատապարտող կոնդակով մը, ինչպէս նաեւ Անտիոքի եւ Հալէպի յոյն եւ ասորի պատրիարքներն ալ՝ Ֆրանսայի թագաւորին կը հաւաստէին թէ իրենք կը պայքարին այս նոր կրօնքին դէմ։

Ասիկա իբր հաւաստիք կը տրուէր Լուի ԺԴ.ի, թէ Արեւելքի քրիստոնեաները իր պաշտպանած կաթողիկոսութեան դէմ չէին։ Այս յարաբերութիւնները կը շարունակուին նոյնիսկ 1673ին Ֆրանք-թուրք խաղաղութեան դաշինքէն ետք որ Գոլպէռեան դաւ մըն էր Արեւելքի քրիստոնեաներուն դէմ։ Բայց Արեւելքի մէջ տակաւին կը հաւատային Ֆրանսայի եւ Հռոմի որ կաթոլիկութեան հնազանդեցնելու համար «հերիտիկոս»ները, միջոցներու մէջ խտիր չէր դներ։

Հնազանդութիւն եւ հպատակութիւն կը պահանջուէր առանց փոխադարձ հաւաստիքի մը եւ տեսանելի աջակցութեան մը, բացի հայ, մարոնի եւ յոյն երիտասարդներու Փարիզի մէջ ուսում տալու գործին։

Արեւելքի ժողովուրդները խաբուեցան, ինչպէս միշտ կը պատահի տկար ժողովուրդներու, որոնցմէ մէկն ալ հայն էր։

Յակոբ Կաթողիկոս, Հռոմի դիմեց երբ տեսաւ որ Նախիջեւանի Ունիթոր-ներուն պետը Մատթէոս Յովհանեսեցի (1656-1674) Սպահանի մէջ ազդեցիկ դիրք մը ունէր, իբրեւ դեսպան Լուի ԺԴ.ի, Հռոմի Պապին եւ Վենետիկի Հասարակապե-տութեան, որոնք Պարսկաստանը իբրեւ դաշնակից ունենալ կ՚ուզէին, Պարսկաս-տան, ինքն ալ այս զինակցութեան պէտքը ունենալով՝ զիջող էր եւ կաթոլիկու-թեան յարողներուն առաւելութիւններ կուտար։

Ասկէ հրապուրուած, հայերու մէջ ալ երեւան եկան եկեղեցականներ, որոնք հոգիներու փրկութենէ աւելի՝ կարեւոր համարեցին ֆիզիքական գոյութեան պահպանութիւնը եւ միամտութիւն ունեցան թէ, կաթոլիկութեան յարելով ասիկա ձեռք պիտի բերէին, հիմնուելով մի քանի երեւոյթներու վրայ։

Այս համոզումը ունեցած է նաեւ Յակոբ Ջուղայեցի որ, ինչպէս տեսնուեցաւ, հաւաստիքներ կ՚ընծայէր կաթոլիկութեան, որուն սակայն չէր հաւատար։

Այսպէս, երբ, 1673-1674ին Յակոբ Ջուղայեցի Սպահան էր, Ֆրանսական առեւտրական ընկերութեան ներկայացուցիչները հասկցուցին թէ՝ եթէ պապը միջնորդէր հայերու հովանաւորութեան համար, Լուի ԺԴ. կ՚ընդառաջէ, բայց ասոր համար հարկ է որ Հայոց Կաթողիկոսը ոչ թէ միայն դաւանութեան թուղթեր յղէր Հռոմ, այլ ուղղակի ընդունէր հռոմէական եկեղեցւոյ դաւանանքը եւ որ ամենէն կարեւորն է՝ ենթարկուի հռոմէական աթոռին գերիշխանութեանը։ Այս թելադրութիւնը կատարած էր Սպահան հաստատուած Քաբուչինեան միաբանու-թեան պետ Ռաֆայէլ Տիւման ուր Ֆրանսական ընկերութեան ներկայացուցիչ-ներու բանակցութեանց կը մասնակցէր։

Յակոբ Կաթողիկոս, այս վիճակը տեսնելով եւ ամէն վտանգ աչքը առնելով, 2 Ապրիլ 167...ին վերջապէս կուտայ դաւանութեան թուղթ մը Էջմիածնի տաճարին մէջ հանդիսաւորապէս եւ հրապարակաւ Դոմենիկեան վարդապետ Հ. Պիսկոպոյի եւ անոր ընկերացող հայազգի Պետիկ վարդապետին։

Նոյնը կը գրէ Կղեմէս Ժ. Պապին (1670-1676) եւ Բրոբականտայի նախագահին։

Այս մեծ յաջողութենէն ետք Հ. Պիոսկոպոյի եւ Պետիկ վարդապետ գացին Աւստրիա, աշխատելու համար ինպաստ հայոց, մինչ Ֆրանսայի մէջ կը գործէին Հաճի Մուրատ, Յովհաննէս Թիւթիւնճի եւ ուրիշներ։

Պիոսկոպօ, Լէոբոլտ Ա. կայսեր իր տեղեկագիրը տալէ ետք Հռոմ կ՚երթայ, Պետիկը ձգելով Վիեննա, ուր ան կը շարադրէ գիրք մը Պարսկաստանի եւ հայոց վրայ։

Փիոսքոփ եւ Պետիկ Հայաստանէն հեռանալէ ետքն ալ իրենց կապը պահեցին Յակոբ Ջուղայեցիի հետ եւ բանակցեցան Պարսկա-Հայաստանի իշխաններուն եւ Մելիքներուն հետ, իրենց աջակից ունենալով Պռոշեան տոհմէն Իսրայէլ Իշխանը (հայր Իսրայէլ Օրիի)։

Կաթոլիկ միսիոնարներու հետ կաթողիկոսին վարած բանակցութիւնները յանգեցան սա եզրակացութեան որ նոր յատուկ պատուիրակութիւն մը ուղարկուի

Հռոմ:

Յայտնի չէ թէ այս դիմումը ի՞նչ արդիւնք ունեցաւ, սակայն ստեղծուած վիճակը շարունակուեցաւ եւ կաթողիկոսը ստիպուեցաւ շարունակել դիւանագիտական բանակցութիւնները:

Ֆրանցիսկոս Պիսկոպօ, որ 1673ին կրկին անգամ Հայաստան եկած էր, իբրեւ Նախիջեւանի գաւառին հայ կաթոլիկ համայնքին եւ եպիսկոպոսարանին վերահսկող ու պապական աթոռի ընդհ. փոխանորդ՝ 1674ին, երբ Նախիջեւանի արքեպիսկոպոսը՝ Մատթէոս գացած էր Ղազուին՝ Շահին մօտ, Պիսկոպօ անոր փոխանորդած էր: 1675ին ինքն ալ գնաց Ղազուին, Եւրոպայէն Շահին ուղղուած թուղթերը մատուցանելու համար եւ անկէ Պապին եւ Գերման Կայսեր ուղղուած պատասխանները տարաւ:

Ան, Նախիջեւանէն Երեւան կ'երթայ հայազգի Պետիկի հետ եւ հանդիպումներ կ'ունենայ Յակոբ Կաթողիկոսի հետ ու անկէ իր կաթոլիկութեան յարած ըլլալու հաւաստիք տուող նոր թուղթեր առնելով Պետիկի հետ Արեւմուտք կ'երթայ Ռուսաստանի ճամբով:

Պիսկոպօ 1678ին կը մեռնի Հռոմի մէջ, յուսահատութեան մատնելով Յակոբ Ջուղայեցին, որ խորհրդակցական ժողով մը կը գումարէ Էջմիածնի մէջ: Այս ժողովին կը մասնակցին վեց եկեղեցականներ ու վեց աշխարհականներ:

Հոն կ'որոշուի Յակոբ Ջուղայեցին դրկել Հռոմ, անձամբ վարելու համար բանակցութիւնները, քանի որ Պիսկոպօ մեռած էր:

Յակոբ Կաթողիկոս 1678 Օգոստոսին ճամբայ կ'ելլէ, իր հետ ունենալով երեք եկեղեցական եւ երեք իշխաններ, որոնց մէջ էր Իսրայէլ Օրի:

Առաքել Վրդ. Բոպիկի գրած իր 23 Նոյեմբեր 1679 թուակիր նամակին մէջ, Յակոբ Կաթողիկոս կը պատմէ իր Սեւ Ծովու ճամբով չկրնալ երթալը, դառնալը եւ Սիպիրի մէջ ձերբակալուիլը ու Կարնոյ մէջ ութ ամիս բանտարկուիլը, կաշառքով ազատիլը, Ամետ երթալը, ու անկէ կառավարութեան կողմէ Կ. Պոլիս բերուիլը, ու կը գրէ թէ յաջորդ տարի Հռոմ պիտի երթայ:

Կ. Պոլսոյ մէջ յարաբերութեան մէջ կը մտնէ Հռոմի Պոլսոյ ներկայացուցիչ նուիրակ՝ Գասպար Արք. Գասպարինիի հետ: Միեւնոյն ատեն կը զբաղի Պոլսոյ գաղութին վէճերով ու ազգային ընդհանուր խնդիրներով:

Այս պատճառներով ճամբորդութիւնը կը ձգձգուի: Մայիս 30ին կը հիւանդանայ ու օրէ օր տկարանալով՝ կը վախճանի 1680 Օգոստոս 1ին ու կը թաղուի Բերայի հայոց գերեզմանատունը:

Մահուան օրը լատին կրօնաւորներու եւ Ոսկան Երեւանցիի քեռորդի Սողոմոն Լեւոնեանի եւ Մաղէու Երէց Համազասպեանի ներկայութեան, դաւանութեան նոր թուղթ մըն ալ կուտայ:

Այս գիրը կասկածի առարկայ եղած է, վասնզի հայերէնը շատ երկար է քան ֆրանսերէն եւ իտալերէնները:

Իրապէս կան կասկածելի պարագաներ եւ ուշագրաւ կէտեր, սակայն չարժեր զբաղուիլ անոնցմով, վանզի պէտք չկայ անոր վաւերականութիւնը կասկածի տակ թողուլ (թէեւ կարելի է) վանզի Յակոբ Կաթողիկոսի տուած մի քանի դաւանական թուղթերուն վրայ մէկ հատ աւելի կամ մէկ հատ պակաս՝ նշանակութիւն չունի։

Եթէ Յակոբ Ջուղայեցի անկեղծ համոզումով ալ տուած ըլլայ այս դաւանական թուղթերը, անոնք բնաւ հայ եկեղեցին չեն ենթարկեր Հռոմի, վասնզի, ոչ մէկ բարձրաստիճան ունեցող եկեղեցական, կաթողիկոսներն ալ մէջը ըլլալով, իրաւունք չունին Հայ Եկեղեցին իրենց կամքով հպատակեցնելու Հռոմին, շատ շատ իրենց անձնապէս կաթոլիկացած կրնան ըլլալ։

Հայ եկեղեցին ամբողջ կաթոլիկ ըլլալու համար պէտք է վճիռը տուած ըլլայ եկեղեցականներէ եւ աշխարհականներէ բաղկացեալ ընդհանուր ժողով մը, ինչ որ Ջուղայեցիի օրով չէ եղած։

## ԺԲ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՁԵՌՆԱՐԿՆԵՐ ԵՒ ԱՆՈՆՑ ՇՈՒՐՋ ՉԱՐԱՇԱՀՈՒԹԻՒՆՆԵՐ

Ամէն ազնիւ գաղափարի եւ ազգօգուտ ձեռնարկի համար եթէ միշտ գտնուած են զոհաբերուողի անշահախնդիր տարրեր, գտնուած են նաեւ առիթը օգտագործող եւ անձնական շահախնդրութեան համար կեղծիք գործադրող եւ աս ան խաբող բախտախնդիրներ եւս, որոնք գեղեցիկ գաղափար մը շահագործած են, ինպաստ իրենց անձնական փառասիրութիւններուն կամ իրենց փառքին, յաճախ առանց նկատի ունենալու թէ կը վտանգեն ազգը եւ հայրենիքը: Ինչպէս տեսնուեցաւ ԺԷ. դարուն երկրորդ կէսին, երեւան եկան մի քանի դէմքեր որոնք ջանքեր ըրին ինպաստ իրենց ազգին, շահագործելով ժամանակակից քաղաքական անցքերը եւ միջազգային շարժումները:

Այս ժամանակամիջոցին, Եւրոպայի քաղաքական շարժման մեծագոյն ջիղը Ֆրանսայի Լուի ԺԴ. թագաւորն էր, որ Արեւելքի մէջ կ'ուզէր դեր մը կատարել, կամ աւելի ճիշդ՝ շահագործել միամիտ ժողովուրդներու պարզմտութիւնը ինքզինքը ցոյց տալով իբր համակիր անոնց ազատագրութեան գաղափարին, շահագործութիւն մը որ ի գործ կը դնէր իր նախարարի՝ Գոլպէռի միջոցաւ, Արեւելքի վաճառականութեան մէջ Ֆրանսայի մենաշնորհներ ապահովելու համար:

Ահա չարաշահութիւն մը, որ նենգամիտ կառավարութիւն մը ի գործ կը դնէր միամիտ հայ ժողովուրդին հանդէպ, քրիստոնէութիւնը շահագործելով:

Կար նաեւ աստր մօտ բուն իսկ հայերու չարաշահութիւնները, որոնք անպարկեշտ հայեր կը գործադրէին, իրենց ազգակիցներու միամտութիւնը շահագործելով, բոլորովին անիրագործելի ծրագիրներով: Ասոնցմէ ոմանք թերեւս իրենք միամտաբար համոզուած էին, իրենց ծրագրի իրագործելիութեան, բայց ապահովաբար կային նաեւ ուրիշներ, որոնք, լաւ գիտնալով որ որեւէ յոյս չկար փրկութեան, շահագործած են ժողովուրդին միամտութիւնը, անկարելին կարելի ցոյց տալով: Այս դասակարգին կը պատկանին կարգ մը գործիչներ, որոնք խախուտ հիմերու վրայ կառուցուած երեւակայական տեսակէտներ շինած են իրենց մտքին մէջ, եւ զայն իրականացնել փորձած են, բոլորովին բախտին ձգելով անոր յաջողութիւնը:

Այս արկածախնդիր բախտախնդրութիւնը ծուռ քանակ մըն էր, որով կարելի չէր ուղիղ գիծ մը քաշել:

Մենք տեսանք Հաճի Մուրատը, հաւանօրէն կործանած վաճառական մը –

քանի որ ծովահէններէ կողոպտուած էր – որ անյայտ է թէ ինչպէ՞ս Աղեքսանդրիոյ յոյն պատրիարքին ջանքերուն կը բերէ իր աջակցութիւնը, հայերու ինպաստ արդիւնք մը ձեռք բերելու համար, Օսմանեան կայսրութիւնը քրիստոնեայ վեհապետի մը իշխանութեան ենթարկելու աշխատանքին։

Հաճի Մուրատ ինքնակոչ գործիչ մըն է, որ, ինչպէս Հ. Օթոման տիրած էր, ճիշդ հաւաստիքներ չէր տուած եւ անոր տեղեկութիւններով հայոց բերելիք աջակցութիւնը չափազանց էր, եւ Գանտիայի անկումէն ետք, երբ այլեւս շատ քիչ յոյս կար Լուի ԺԴ.ի դէպի Արեւելք արշաւանք մը կազմակերպելուն, փութացած էր Բարիզ, ուր այդ միջոցին կ՚ազդէին Լուի ԺԴ.ի վրայ յոյսեր ունեցող հայեր, ինչպէս տեսանք։

Հաճի Մուրատ Բարիզի մէջ ի՞նչ ըրած է, յայտնի չէ։ Յայտնի չէ նախ 1683ին Բարիզ գտնուող Զաքարիա Վրդ. Սիսիանցիի, Հալէպցի Ղազարի որդի Յովսէփի, Էրզրումցի Յովհաննէսի որդի Գրիգորի եւ խազանկէլիրցի կամ Ղազանճի Մուրատի եւ Ոսկան Վրդ.ի քեռորդի Սողոմոնի եւ Յովh. Արք. Թիւթիւնճիի ինչո՞վ զբաղուիլը, սակայն յայտնի է թէ որոշ նպատակ մը ունէին ու Հաճի Մուրատի հետ կը գործէին։ Երեւոյթները այնպէս ցոյց կուտան Լուի ԺԴ.ի կամ անոր շրջանակէն բաներ մը կ՚ակնկալէին։

Այս եկեղեցական եւ աշխարհական խումբ մը հայերը երբ այսպէս Բարիզ կ՚ապրէին, հոն կուգար նաեւ չարաշահ կամ խաչագող հայ մը, որ կը կոչուէր Սանի, ոչ հայ անունով։ Ան ճիշդ Գանտիայի անկման տարին (1669), Բարիզ գացած է հայ վաճառականներու հետ, ինքզինքը պարսիկ ներկայացնելով։ Անիկա ընդունած էր Ֆրանսայի Արքունիքին մէջ, եւ չէր վարակած կեղծիքով, քրիստոնէութիւնը իբր թէ նոր ընդունելով՝ Օրլէանի Դուքսին կնքահայրութեամբ մկրտուելով եւ Ֆիլիբ վերակոչուելով։ Այս խաբեբան օգտագործած է Լուի ԺԴ.ի Արեւելքի հանդէպ ցոյց տուած շահագրգռութիւնը, ինչպէս նաեւ իր փայլուն երիտասարդութիւնը, դիրք շինելու համար ամուսնանալով նշանաւոր ճանապարհորդ եւ արեւելեան երկիրներու խուզարկու Ժան Պաթիսթ Թավերնէի պառաւ եւ տգեղ քրոջ հետ, զոր չխղճահարեցաւ յետոյ լքել, վերամուսնանալու համար Շուէտի արքունիքէն օրիորդի մը հետ։

Այս Սանին, որ խորհրդաւոր դէմք մըն է, յետոյ Մոսկուայի եւ Գերմանիոյ մէջ ալ խաչագողական ձեռնարկներ կ՚ընէ, եւ հուսկ ուրեմն կը ձերբակալուի Էրզրումի մէջ՝ Անգլիացի վաճառականի մը ի վնաս գործած խարդախութիւններուն համար։

Թէեւ տուեալները չեն յարմարիր, սակայն մարդ կը տարուի Սանին Հաճի Մուրատի հետ նոյնացնելու, վասնզի ան Հաճիի եւ Շահի կոչումներ ալ ունեցած է։ Կարօտութիւնը կրնայ զինքը խաչագողութեան եւ ապօրինութեանց մղած ըլլալ, սակայն նոյնացման համար փաստը կը պակսի։

Հետեւաբար վստահօրէն կարելի չէ բան մը ըսել, սակայն չարաշահութեան

եւ արկածախնդիր բախտախնդրութեան մը կասկածին տակ է նաեւ հայ ազատագրութեան շարժման մէջ ամէնէն աւելի ուշագրաւ դէմքերէն՝ Իսրայէլ Օրին [եւ անոր] գլխաւոր աջակիցը՝ Մինաս Վրդ. Տիգրանեան, որոնց գործունէութեան շուրջ տակաւին բացասական երեւոյթներ գոյութիւն ունին, որոնք տակաւին պէտք եղածին պէս յստակ չեն եւ կրնան զանազան մեկնութեանց առարկայ ըլլալ:

Որպէսզի կարելի ըլլայ բացատրել թէ ինչպէս այս տեսակ կարծիքներու հակասութիւն մը ստեղծուած է անձի մը շուրջ որ բաւական ճարպիկ եւ յաջող գործունէութիւն մը ունեցած է, ու իր առեղծուածային անունին շուրջը հիւսուած է խիստ հետաքրքրական վէպ մը. լուծելու համար այդ առեղծուածը՝ հարկ է քննել այն աղբիւրները, որոնք անոր անձին ու գործին վրայ կը խօսին, ու ցոյց տալ թէ իր անձին շուրջ տարակարծութիւնները ուրկէ կը ծնին:

Իսրայէլ Օրի անունը այնքան շատ յեղյեղուած անուն մըն է եւ իր պատմութիւնը այնքան շատ ծանօթ է, որ կ'արժէ անոր իրական կամ յերիւրածոյ նկարագիրը ճշդել աշխատիլ, ճշմարտութեան մօտենալու համար:

Նախ ուրեմն ծանօթանանք Իսրայէլ Օրիի կեանքի պատմութեան, ինչպէս կ'աւանդեն շարք մը թուղթեր, գլխաւորապէս իրմէն մնացած կամ իրմէ յօրինուած:

Յակոբ Ջուղայեցի Կաթողիկոս, ինչպէս տեսնուեցաւ իբր թէ գումարած էր ժողով մը 1677-78ին Էջմիածնի մէջ, որուն մասնակցած էին վեց աշխարհական եւ վեց հոգեւորական պատգամաւորներ: Հոն որոշուած էր Եւրոպական Պետութիւններուն դիմել եւ այս նպատակով որոշուած էր Եւրոպա ղրկել պատգամաւորութիւն մը, Յակոբ Ջուղայեցիի գլխաւորութեամբ:

Յակոբ Կաթողիկոս ու իր ընկերները նախ գացին Վրաստան ու բանակցութիւններ կատարեցին Գէորգի ԺԱ. Թագաւորին հետ, որ ծրագրած էր ապստամբիլ ու թօթափել Պարսկական լուծը:

Պատգամաւորները կը հասնին Կ. Պոլիս, ուր կը մեռնի Յակոբ Ջուղայեցի: Պատուիրակները կը ցրուին իսկ վրաց թագաւորի ապստամբութիւնը կը ձախողի:

Պատգամաւորներէն քսանամեայ Իսրայէլ Օրի չվերադառնար հայրենիք ու մինակը կը շարունակէ իր ճամբորդութիւնը դէպի Եւրոպա:

Օրի, իբր թէ որդին էր Մելիք Իսրայէլի ու ծնած է 1658ին: Ծննդավայրը որոշ չէ:

Ջուղայեցիի մահէն ետք (1680) Օրի Պոլիսէն կ'անցնի Վենետիկ ու 3-4 տարի հոն մնալէ ետք կ'անցնի Ֆրանսա, ուր կը մնայ 12 տարի, 6 տարի իբր խանութպան ու 6 տարի՝ իբր սպայ, մասնակցելով Ֆրանսայի մղած պատերազմներուն: Ապա կ'անցնի Գերմանիա Պալատինեան իշխանութեան կեդրոն Դիւսէլտօրֆ քաղաքը: Հոն կը վարէ պետական պաշտօն եւ վաճառականութիւն ալ կ'ընէ: Հոն մօտէն կը ծանօթանայ երկրին կայսրընտիր իշխանին հետ՝ իշխան Յովհան Վիլհելմ, որ յոյսեր կը ներշնչէ իրեն քան Լուի ԺԴ.ը, որ այս ատեն Թուրքիոյ Սուլթանին հետ

բարեկամական յարաբերութիւններ կը մշակէր։

Իշխան Վիլհելմի յանձնարարականով 1698ին Օգոստոսին, Օրի կ'երթայ Վիեննա ու Հայաստանի ազատագրման իր ծրագիրը կը ներկայացնէ Լէոբոլտ Կայսեր, որ որեւէ լուրջ խոստում մը չըներ։

Յովհան Վիլհելմ Իշխանի յուսադրական նամակներով, որոնք ուղղուած էին հայ Մելիքներուն եւ վրաց թագաւորին՝ Իսրայէլ Օրի կ'ուղեւորի Հայաստան։ Հակառակ որ որոշած էր Ռուսաստանի ճամբով երթալ հայրենիք, բայց վերահաս ձմրան պատճառով կամ այլ պատճառով Թուրքիոյ ճամբով եւ հայ առեւտրականներու կարաւանով կ'երթայ։

1699 Ապրիլին, մեծ դժուարութիւններով Օրի կը հասնի Էջմիածին, ուր պաղ ընդունելութիւն մը կը գտնէ ու հիասթափուած՝ իր հայրենի գաւառը կ'երթայ։ Սիսիանի Անգեղակոթ աւանին մէջ կը հանդիպի իրեն վաղեմի ծանօթ Մելիք Սաֆրազին, որ անվարան կը հաւանի Օրիի ծրագրին ու կը խոստանայ աջակցիլ անոր։ Ան կը ջանայ Անգեղակոթ հրաւիրել Սիւնիքի Ս. Մելիքները գաղտնի խորհրդակցութեան մը, ուր կ'որոշուի Հայաստանի ազատագրութեան համար պատուիրակութիւն մը ղրկել Եւրոպա։

Մելիքներուն ռեւէ մէկուն բացակայութիւնը երկրէն՝ կարող էր կասկածներ յարուցանել պարսիկ խաներու մէջ, ուստի կ'որոշուի Օրիի հետ Եւրոպա ղրկել Արեւմտեան Հայաստանէն եկած Մինաս Վարդապետը, որ գրագէտ ու աշխարհ տեսած մարդ էր։

Սիւնիքի մելիքները իրենց ստորագրութիւններով ու կնիքներով հաստատուած ճերմակ թուղթեր կուտան Օրիի եւ Մինաս Վրդ.ի, որովհետեւ տեղւոյն վրայ գրելը վտանգաւոր էր։ Բերանացի կ'ըսեն ամէն ինչ, որպէսզի Եւրոպա հասած ատեն շարադրեն ժողովին որոշումները եւ դիմեն պէտք եղած տեղը։

Մեծ Կապանի հայ վաճառականները շատոնց Շամախիի ճամբով կը յարաբերէին Ռուսիոյ հետ, իսկ Մելիքները աւելի լաւ կը ճանչնային Ռուսիան քան հեռաւոր «Ֆրէնկ»ի երկիները, ուստի կարեւոր համարեցին դիմել նաեւ արագօրէն զօրացող Ռուսիոյ օգնութեան։

Մելիքներու կողմէն հաւանութիւն գտած եւ ընդունուած իր ծրագրով Օրին 1700ին դարձաւ Գերմանիա։ Մելիքներու նամակը Պալատինեան Իշխանին յանձնելէ ետք Արեւելեան Հայաստանի ազատագրման ծրագիրը, որ բաղկացած էր 36 կէտերէ՝ ներկայացուց Աւստրիոյ Կայսեր։ Այս տեղեկագիրներուն մէջ Օրի լաւ տեղեակ կ'երեւայ Իրանի, Անդրկովկասի, մասնաւորապէս Հայաստանի աշխարհական, տնտեսական ու քաղաքական հարցերուն։ Ան կը ներկայացնէ ապագայ ռազմական գործողութիւններու մանրամասն ծրագիրներ։

Թէ Յովհան Վիլհելմ եւ թէ Աւստրիոյ կայսրը զլացան որեւէ իրական օգնութիւն ցոյց տալ հայերուն։ Օրին վերջնականապէս համոզուեցաւ, որ հայ ժողովուրդի ազատագրութեան համար Եւրոպայէն օգնութիւն ստանալու ծրագիրը զուրկ է

որեւէ իրական հիմք: Եւրոպական պետութիւնները Արեւելքի մէջ հետամուտ էին իրենց շահերուն, որոնք հակադիր էին հայ ժողովուրդին ազատագրութեան: Ուստի պէտք էր հրաժարիլ այս ուղղութենէն:

Միայն Ռուսաստանն էր այն ուժեղ պետութիւնը որ կարող էր իրական օգնութիւն ցոյց տալ հայերուն:

Ռուսաստանը արդէն պայքարիլ սկսած էր, Սեւ եւ Կասպից ծովերու ափերուն վրայ հաստատուելու եւ պետութեան սահմանները դէպի հարաւ ընդարձակելու համար, որով վերջ պիտի գտնէին թրքական յարձակումները: Ուստի կարելի էր յուսալ որ Ռուսիա կ'օգնէ հայ ժողովուրդին, ինչպէս նաեւ անդրկովկասի թաթար ու հայրենակից ժողովուրդները, ազատագրուելու պարսիկ եւ թուրք լուծէն:

1701ի ամառը, Իսրայէլ Օրին Լեհաստանի ճամբով կուգայ Ռուսաստան՝ Մինաս Վրդ.ի ուղեկցութեամբ: Ան պատրաստած [էր] Ռուսիոյ Պետրոս Զարին ուղղուած դիմումը, որ իբր թէ տասը ստորագրութեամբ եւ կնիքներով վաւերացուցած էր Սիւնիքի Անգեղակոթ աւանին մէջ:

Մելիքները կը յայտնէին Մեծն Պետրոսի թէ վաղուց քններ եւ իմացեր են որ Հայաստանի ազատագրութիւնը «Զեզմով կը դիւրանայ»: Անոնք, օգնութիւն խնդրելով կուտային նաեւ հաւատարմութեան հաւաստիք:

Մեծն Պետրոս այդ ժամանակ զբաղուած էր հիւսիսային պատերազմով: Սակայն ծանօթանալով Օրիի ծրագրին, կը յուսադրէ որ պատերազմէն ետք կը հետաքրքրուի հայ ժողովուրդի հարցով եւ այդ դիմումով:

Օրի Մոսկուայի մէջ կը հանդիպի Վրաստանի թագաւոր Արչիլին եւ մօտիկ բարեկամութիւն կը հաստատէ անոր հետ, եւ կը վերանորոգէ հայ-վրացական քաղաքական գործակցութեան ծրագիրը:

1704ին Մեծն Պետրոս գնդապետի աստիճան կը շնորհէ Օրիին ու մասնաւոր յանձնարարական նամակով կ'ուղարկէ Պարսկաստան: Օրի նախ երկու տարի կը մնայ Եւրոպա: Իր հաշւոյն բաւական զէնքեր կը պատրաստէ Ռուսաստանի համար: Հոն կը կազմակերպէ իր դեսպանական շքախումբը:

«Ես ծախեցի այն ամէնը, ինչ որ ունէի, ես իմ խեղճ կարիքներուն ոչինչ չթողուցի եւ պարտքեր ըրի: Վերջապէս այս մեծ բանակցութիւնը վարելու համար», կը գրէ Օրին իր մէկ նամակին մէջ:

Օրին Մեծն Պետրոս Զարին նամակներով եւ 50 հոգիէ բաղկացած շքախումբով 1707ին Աստրախանէն ճամբորդեց Պարսկաստան: Ռուս նաւաստիներ անոր ուղեկցեցան մինչեւ Շամախի: Ան հոն մնաց մօտ երկու տարի, որուն ընթացքին կապ հաստատեց ոչ միայն Ղարաբաղի եւ Սիւնիքի Մլիքներուն եւ մեծամեծներուն, այլ եւ Ատրպէյճանի գործիչներուն եւ մեծամեծներուն հետ: Անոր գործակիցներուն մէջ էր նաեւ Երեւանի յայտնի պաշտօնեայ, մասնագէտ եւ արհեստաւոր Նաւասարդը, որ պիտի նախապատրաստէր Երեւանի ապստամբութիւնը ու յարաբերութիւններ պիտի պահէր Ռուսիոյ հետ:

Յաջորդ տարին միայն (1708) Պարսիկ Շահը Օրիին թոյլատրեց Սպահան երթալ։ Օրին երկար չմնաց պարսիկ մայրաքաղաքը, որովհետեւ Ֆրանսական դեսպանը եւ կաթոլիկ միսիոնարները կը գրգռէին Շահը թէ ռուսական հայազգի դեսպանը, վրացիներու հետ միացած պիտի կազմակերպէ ապստամբութիւն մը եւ հայոց թագաւոր պիտի ըլլայ։

Սպահանէն վերադառնալուն՝ Օրին մէկ տարի եւս մնաց Շամախի ու հոն հանդիպեցաւ Շամախի Հասան Ջալալեան Աղուանից հայրենասէր կաթողիկոսին, որ քաղաքագէտ իշխան մըն էր եւ դարձած էր Օրիի գործօն աշխատակիցը։

Ան՝ Օրիի հետ կը մեկնի Աստրախան, Պետրոս Ա.ի հետ տեսակցելու նպատակով, սակայն երբ 1711ին Աստրախանի մէջ Օրի յանկարծամահ կ՚ըլլայ, Եսայի Կաթողիկոս մինակ կը մնայ եւ կը հրաժարի Մոսկուա երթալէ։

Այսպէս վերջ կը գտնէ Օրիի գործունէութիւնը, որը Մինաս Վարդապետ Տիգրանեան կը փորձէ շարունակել, առանց որեւէ յաջողութեան։

Օրի, ինչ որ ալ եղած ըլլայ իր անհատական արժանիքները եւ իր գործունէութեան նկարագիրը, եթէ չէ կրցած որեւէ դրական արդիւնք ձեռք բերել իր ուղիղ կամ անուղիղ ջանքերով, անուրանալի է որ ինքն է առաջին քաղաքական գործիչը, որ իբր սկզբունք եւ գործելակերպ ընդգրկած է ռուսական վարքագիծը եւ առանց ռուսական աջակցութեան հայ ազատագրութեան անկարելիութիւնը ընդունած է։

Իսրայէլ Օրի այսպէս անշահախնդրօրէն կամ շահախնդրաբար դեր մը կատարած է հայ ազատագրութեան գործին մէջ, հետեւաբար պէտք է քննել իր անձին շուրջ հիւսուած պատմութիւնը եւ ճշդել թէ ի՞նչ բան ճշմարիտ է եւ ի՞նչ բան սուտ։

Իսրայէլ Օրիի կեանքը կը բաժնուի երկու որոշ մասերու, ան որ բացարձակ մութ է եւ գրեթէ անյայտ է եւ ան որ քիչ շատ որոշ է, սակայն կասկածելի իրողութիւններով լեցուն։

Առաջին մասը, այն ուր իր ծնունդէն մինչեւ իր քաղաքական գործունէութեան ձեռնարկելու շրջանն է, այսինքն 1658էն 1698 գրեթէ ոչ մէկ աշխատանք ծանօթ է եւ անոր առաջին քսան տարիներու մասին (1658-1678) գրեթէ ոչինչ գիտենք որ դրականապէս հաստատուած ըլլայ։ Իսկ երկրորդ քսանամեակին (1678-1698) մասին ինքն է աղբիւրը, իր կազմած կեղծուած կամ յերիւրածոյ վաւերագիրներով, որոնք չեն հաստատուած ուրիշ աղբիւրներով։

Բայց նկատելով որ իր գործը իր գործին հետ կապ չունի եւ իր գործին մէջ իր ծննդավայրը, ծննդեան թուականը եւայլն չեն կրնար մասնաւոր նշանակութիւն մը ունենալ, առանց շատ կարեւորութիւն տալու, մի քանի կէտեր վեր պիտի առնենք։

Քանի մը կասկածելի վաւերագիրներու մէջ, տողընդմէջ ըսուածներէն հետեւցնելով եզրակացուցած են իր կեանքը ուսումնասիրողները թէ խնամով

պահած է իր ծննդավայրը եւ խուսափած է զայն յայտնելէ: Միայն մէկ օտար Յիսուսեան կրօնաւոր մը զինք կոչած է ԳԱՊԱՆԼԸ (Ղափանցի) որ դժբախտաբար շատ որոշիչ որակում մը չէ:

Ասիկա ցոյց կուտայ թէ խնամով պահուած է իր ծննդավայրը բոլոր անոնցմէ, որոնց հետ ճամբորդած է:

Գալով իր ուսման աստիճանին ու դաստիարակչութեան, այս մասին ալ քիչ բան գիտենք:

Ոմանք կ'ենթադրեն թէ Նախիջեւանի Կաթոլիկ Ունիթորներու մօտ ուսում առած պիտի ըլլայ:

Սակայն այս մասին փաստ եւ որոշ ապացոյց չունինք:

Միայն շատ որոշ է թէ Օրի շատ քիչ կամ շատ գէշ գիտէր հայերէն լեզուն, որով ստորագրած է քանի մը թուղթեր, որոնք, որոշ ցոյց կուտան թէ հայերէնի մէջ իր ծանօթութիւնը շատ խեղճ էր:

Նոյնպէս հաւանական է որ հայ տունի մը չի պատկանիր, ինչպէս ինքն կ'ուզէ հաւատացնել, առանց համարձակօրէն կարենալ ըսելու, վասնզի այդ պարագային կեղծիքը երեւան պիտի ելլէր:

Գիտէր ֆրանսերէն, իտալերէն, գերմաներէն, հաւանօրէն լատիներէն, բայց խնդրոյ առարկայ է թէ այս լեզուները ո՞ւր սորված է: Ըստ իր յայտարարութեան, ան կեցած է Վենետիկ, հետեւաբար հոն կրնայ սորված ըլլալ իտալերէնը, իսկ ֆրանսերէնը Ֆրանսայի մէջ ուր կը պատմէ թէ 12 տարի կեցած է: Բայց որովհետեւ լատիներէնն ալ կայ, կարծողներ կան թէ Նախիջեւանի Ունիթորներուն դպրոցը սորված պիտի ըլլայ: Գերմաներէնը Տիւսէլտորֆի մէջ կրնայ սորված ըլլալ:

Ինչպէս կը տեսնուի, իր կեանքի առաջին 20 տարիներուն համար տրուած տեղեկութիւնները, որոնք իր կողմէ թելադրուած թուղթերէն քաղած են, ոչ մէկ ուրիշ վաւերագիրով հաստատելու կարելիութիւնը կայ, եւ պէտք ալ չկայ, քանի որ հանրային շահագրգռութեան առժանի չեն իսկ: 1678-1698 Բ. քսանամեակին մասին գլխաւոր աղբիւրը դարձեալ ինքն է, իր գրած թուղթերը, որոնց վաւերականութիւնը դժուար է հաստատել: 1678ին յիշուեցաւ թէ Յակոբ Ջուղայեցին Էջմիածնի մէջ գաղտնի ժողով մը գումարած է, ուր Ջուղայեցին Հռոմ ուղարկել որոշած է: Այս ժողովին իբր թէ մասնակցած են 6 աշխարհականներ եւ 6 եկեղեցականներ, որոնցմէ մէկն էր Իսրայէլ Օրիի հայրը, որ Իսրայէլ կը կոչուէր իբր թէ:

1680ին Ջուղայեցի, Էջմիածնի ժողովին անդամներէն ոմանց ընկերակցութեամբը կը հասնի Պոլիս, Հռոմ երթալու համար: Բայց հոն կը վախճանի եւ իր ընկերակիցները, որոնցմէ մէկը իբր թէ Իսրայէլ Օրին էր՝ կը դառնան Հայաստան: Մինչդեռ Օրի կը շարունակէ իր ճամբան ու կ'երթայ Վենետիկ: Սակայն նկատելի է որ ոչ մէկ ապացոյց կայ Օրիին կաթողիկոսին հետ Պոլիս գացած ըլլալուն եւ անոր մահէն վերջը Եւրոպա անցած ըլլալուն համար: Բնաւ հաւանական չէ որ

Օրի կաթողիկոսին հետ Պոլիս գտնուած ըլլայ, վասնզի իր մահուան շուրջը գտնուող անձերը յիշուած են, սակայն Օրին չէ յիշուած։ Կասկածելի է ինչպէս իր իշխանական սերունդի մը պատկանիլը, նոյնպէս անհաւանական է Յակոբ Կաթողիկոսի պատուիրակութեան մասնակցիլը։

Օրի, իրեն պաշտօնական դիրք եւ պատուիրակի հանգամանք տալու համար ստեղծած է պատմութիւնը տարիներ ետքը։ Ան կ'երեւի թէ սովորական անհատ մըն է, որ Եւրոպականացած է բախտախնդրութեան համար, իր ուսուցիչ Ունիթորներուն ազդեցութեամբ։

Ոչ ոք կրնայ երաշխաւորել իր Վենետիկ բնակութեան ո՞ր աստիճան ճիշդ ըլլալը եւ ոչ ալ ո՞րչափ հոն մնալը։ Վենետիկէն իբր թէ անցած է Ֆրանսա, ուր մնացած է 12 տարի։ Առաջին 6 տարիները առեւտուրով զբաղելով, եւ ետքը բանակին մէջ սպայ եղած է եւ գերի ինկած է անգլիացիներուն ձեռքը։

Ինչպէս կը հաստատուի, Օրի Ֆրանսայի մէջ ապրող հայերէն դրամաշորթութիւն ըրած է եւ այլեւս իրեն կարելի չէ եղած ապահովաբար Ֆրանսա մնալ, ուստի անցած է Գերմանիա եւ հաստատուած է Պալատինեան իշխանութեան կեդրոն Տիւսելտորֆի մէջ, ուր 4 տարի պետական պաշտօնեայ, եւ ապա ցորենի եւ զինիի վաճառականութիւն ըրած է։

Հոն ծանօթացած է Յովհան Վիլհելմ իշխանին հետ եւ յաջողած է մտերմանալ անոր հետ ու զայն շահագործել հայ ազատագրութեան հարցով, անոր Հայաստանի թագը շնորհելու հաւանականութիւնը ցոյց տալով։

Վիլհելմ, որ մօտաւոր ազգականն էր Հռոմէական կայսեր տիտղոսը կրող Աւստրիոյ կայսեր, Օրին կը ղրկէ Վիեննա, 1698 Օգոստոսին, յանձնարարական նամակով եւ հոն Լէոբոլտ կայսեր կը ներկայացնէ Հայաստանի ազատագրման իր ծրագիրը։ Կայսրը որեւէ լուրջ խոստում չըներ, սակայն կը յուսադրէ Օրին, եւ անոր խորհուրդով կուտայ նամակներ հայ Մելիքներուն եւ վրաց թագաւորին։

Օրին, այս նամակներով կ'երթայ Հայաստան։ Այս թուականէն կը սկսի անոր քաղաքական գործունէութիւնը։

Բախտախնդիր վաճառականը կը դառնայ բախտախնդիր քաղաքական գործիչ։

## ԺԳ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ԻՍՐԱՅԷԼ ՕՐԻ ԻԲՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԻՉ (1698-1711)

Իսրայէլ Օրի, իր անհատական կեանքին մէջ ըրածները անձնական էին, սակայն Յովհան Վիլհելմ կայսրը դերին ծանօթանալէ եւ զայն հայկական խնդիրներով շահագրգռելէ ետք, այլեւս անհատականի գործեր ըլլալէ կը դադրէին իր գործերը։

Ան այլեւս կը դառնար քաղաքական գործիչ։

Օրի, քսան տարի Արեւմուտքի մէջ դեգերելէ ետք՝ 1699ին դարձաւ հայրենիք, իր հետը բերելով Վրաց Գուրգի խանէն (Գէորգ ԺԱ. Թագաւորը) Հայ Եկեղեցւոյ պետերուն եւ Հայաստանի Մելիքներուն ուղղուած գրութիւններ։ Այս նամակներով, կայսրընտիրը պատրաստակամութիւն կը յայտնէր Հայաստանի ազատագրման գործին օգնելու, պայմանով որ Հռոմի Պապը, գերման կայսեր եւ անոր զինակիցները օգնեն։ Անհրաժեշտ կը դատէր որ հայոց վարիչները, Օրիի միջոցաւ հաստատէին եւ ճշդէին իրենց դիրքը։

Ինչպէս անհատական գործունէութեան վերաբերեալ թուղթերու նոյնպէս նաեւ քաղաքական գործունէութեան վերաբերեալ թուղթերուն մէջ բնաւ կարելի չէ ճշդել իր ծննդավայրը եւ ոչ ալ իր ծնողքը եւ յարակից պարագաները, որոնք խնամքով ծածկած է։ Միայն գիտենք որ ամուսնացած էր Եւրոպայի մէջ, բայց հոն ալ չէ [յիշած]՝ թէ ո՞ւր կ՚ապրէր իր ընտանիքը երբ ինք քաղաքականութեամբ կը զբաղէր։

Միայն տեղ մը յիշուած է թէ իր կինը – որուն ի՞նչ ազգէ ըլլալն ալ յիշուած չէ – իր երկու մանչ զաւակներով կ՚ապրէին Պրիւքսէլ։ Իսկ ուրիշ տեղ մը յիշուած է Գերմանիա։ Շատ մը բաներ անորոշ են եւ չեն ճշդուած, նոյնիսկ չէ ճշդուած իր կրօնական դաւանանքը, կաթոլի՞կ է թէ հայ առաքելական։ Պարագային համաձայն փոխուած։

1698ին Տուսելտորֆի մէջ կայսրընտիրին հետ ծանօթանալէ ետք, Օրի հրաժարած է իր առեւտրական գործէն եւ ինքնակոչ կերպով ստանձնած է քաղաքական առաքելութիւն մը, որով շահագրգռուողները միայն Յովհան Վիլհելմը եւ թոսքանացի մեծ իշխանը՝ Կոզմաս Գ.ն էր։ Այս վերջինը հայերով շահագրգռուած պիտի ըլլայ Լիվոռնոյի հայ վաճառականներով։

Օրիի իրական խելք դնողը միայն կայսրընտիրն էր։ Օրի, անոր ապաւինելով, Հայաստանի վիճակը քննելու համար՝ կայսրընտիրի նամակներով բեռնաւոր ճամբայ կ՚ելլէ 1698 Օգոստոսին կը հասնի Վիեննա։ Հոն յուշագիր մը կուտայ

Լէոբոլտ կայսեր, որմէ կը խնդրէ հովանաւորութիւն հայերու վրայ, եւ գրութիւն մը Հայաստանի իշխանները յուսադրող։ Սակայն գոհացում չստացաւ, վասնզի իրենց տալիք գիրը կրնար թուրքերու ձեռքը անցնիլ, երբ իրենք հաշտութեան բանակցութեանց մէջ էին թուրքերու հետ։

Վիեննայի մէջ իրեն օգնած են կաթոլիկ կղերականներ, ինչպէս նաեւ Ներսէս Եպիսկոպոսը։

Իր ձեռքը գտնուած թուղթերէն մէկը ուղղուած էր Աղուանից անգոյ Փիլիպպոս Կաթողիկոսի մը, եւ Եղիազար Այնթապցի վախճանած Կաթողիկոսին, իսկ Վրաց Գէորգի Իշխանին (Գուրգէնեան) ուղղած նամակը անօգուտ էր, վասնզի 1696ի վրաց ապստամբութիւնը ճնշուած էր եւ ան հրատարակած էր Պարսից իշխանին եւ ընդունած էր իսլամութիւնը եւ գացած էր Սպահան, ուր մայրաքաղաքի զինուորական հրամանատարի պաշտօնը կը վարէր։

Օրի, հակառակ ճամբու դժուարութիւններուն, 1699 Ապրիլին ոտքը դրաւ հայրենի երկիր, երբ հայոց կաթողիկոսն էր Նահապետ, որ իր նախորդին պէս դէպի Հռոմ հակումներ ունէր։

Օրի, այս պայմաններուն մէջ, ինչպէս կ՚երեւի, դժուար է թէ յաջողած ըլլայ ժողով գումարել, Մելիքներուն եւ Կաթողիկոսին ներկայացնելու համար դիմումնագիրը։

Պատմագէտներ կան, որոնք կը պնդեն թէ երեւակայական է Անգեղակոթի անունով գումարուած ժողովը, որուն՝ հաւանօրէն երեւակայական անդամներուն մասին ալ ստոյգ տեղեկութիւններ գոյութիւն չունին։ Ըստ Օրիի, ընդամէնը 15 օր միայն ինք կրցած է մնալ Հայաստան, իր հայրենի երկիրը։

Օրի, գրեթէ ծպտուած ապրած է իր ծննդավայրը (իբր թէ Սիւնիքի մէջ), ուր հիւրընկալուած է իր հարազատ քրոջ տունը, առանց իր ինքնութիւնը յայտնելու։

Իր ինքնութիւնը յայտնած է միայն Սիւնիքի Անգեղակոթ գիւղին իրեն վաղածանօթ մելիք Սաֆրազի, որուն միջոցաւ շրջակայ մելիքներուն հետ բանակցած է։ Հոն շինած են կեղծ թուղթեր կամ ինք առած է սպիտակ թուղթեր, առանց որեւէ բնագրի, յետոյ լեցնելու դիտումով։ Այս թուղթերուն մէջ Անգեղակոթը եղած է քաղաք, իսկ մելիքները՝ «Հայաստանի իշխանաւորներ եւ պաշտօնեաններ»։

Իբր թէ Անգեղակոթի ժողովականները կը յանձնարարեն Օրին, որպէս Պռոշեան սերունդէն, որ նահատակներ տուած է քրիստոնէութեան համար։

Այս թուղթերը, մտածուած Օրիէ, գրուած էին Մինաս Վարդապետի եւ Եւրոպայի մէջ թարգմանուած էին լատիներէնի կամ իտալերէնի եւ այլ լեզուի։

Ստեփանոս Ռոշքա, իր տարեգրութեան մէջ կ՚ըսէ թէ ինք կատարած է թարգմանութիւնը Հռոմի մէջ, տասը մելիքներու մէկ թուղթը, որ մատուցուած է Իննովկէնտ ԺԲ. Պապին (1699 Ապրիլ 19 թուակիր, իբր թէ Անգեղակոթ գրուած), որուն յայտնելով իրենց հպատակութիւնը, օգնութիւն կը խնդրէին։ Ստեփանոս Ռոշքա, կը յայտնէ թէ Օրի ունէր նաեւ թուղթեր ուղղուած Լէոբոլտ կայսրընտիրին

(Պալատինեան) եւ Մոսկուայի Զարին: Օրի, իրեն հետ ունէր նաեւ մելիքներէն ստացած լիազօրագիր մը, որ նոյնպէս Ռոշքա թարգմանած է:

Հոս երեւան կուգայ թէ, իբր թէ Անգեղակոթի ժողովին մէջ Զարին դիմելու պէտքը զգացուած է, կամ շատ վերջը իրենց առձեռն ունեցած սպիտակ թուղթերէն մէկը լեցուցած են, Մեծն Պետրոսի հաստատելու համար որ արդէն վաղուց հայերը իր վրայ դրած էին իրենց յոյսերը:

Անգեղակոթի ժողովին ատեն այս տեսակ գաղափար մը գոյութիւն չէր կրնար ունենալ, վասնզի իրենց յոյսը դրած էին Արեւմուտքի վրայ:

1700ին է որ անկիւնադարձ մը եղաւ, երբ հայոց ակնարկը կը դառնար դէպի Մոսկուա, յուսահատ Եւրոպայէն:

[Զուրկ] է փաստէ, որ 1699ին կազմուած թուղթերուն մէջ ռուս Զարը «Մեծ դուքս» կոչուած էր, մինչեւ 1700էն ետք անոր տրուած էր իր սովորական Բոլոյ տիտղոսը կատարեալ:

Որոշ է որ այդ թուղթը գրուած է Անգեղակոթէն դուրս եւ խորհրդաժողովէն յետոյ:

* * *

1699 Սեպտեմբերին, Օրին դառնալով Տիւսէլտօրֆ, կայսրընտիրին տուաւ իր տեղեկագիրը, եւ ներկայացուց մանրամասն ծրագիրը, Հայաստանի ազատագրութեան համար:

Այս ծրագիրը ունէր շատ վիրաւոր կողմեր, բայց նաեւ մասեր, որոնք արժէքաւոր էին: Ասիկա ուշագրաւ է «ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» համար:

Օրի, Մինաս Վարդապետի հետ, 1700ի սկիզբը Տիւսէլտորֆէն կը մեկնի, Ֆիորէնցա (թոսքանայի մայրաքաղաքը), Հռոմ, Վիեննա եւ Մոսկուա, առաջիկայ արշաւանքը կազմակերպելու համար: Իրեն հետ առնել կ'ուզէ կաթոլիկ բարձրաստիճան եկեղեցական մը, որպէսզի կաթոլիկ երկիրներու մէջ յաջողի:

Հոս նաեւ երկսայրաբանութիւն երեւան կուգայ:

Օրի կ'աշխատի գաղտնի պահել իր Հռոմի եւ կաթոլիկ աշխարհին հետ կատարած բանակցութիւնները, Հայաստանի բնակիչները չզայրացնելու համար, մինչ ինք կը խաբէր կաթոլիկները, ըսելով թէ հայերը չեն կրնար արտայայտել իրենց կաթոլիկութիւնը, վասնզի կրնային մատնուիլ եւ ամբաստանուիլ թէ ֆրանկներու ձեռքը յանձնել կ'ուզեն Հայաստանի թագաւորութիւնը:

Պարսիկ կառավարութիւնը պատճառներ ունեցած է կասկածելու կաթոլիկ գործունէութենէն, իբրեւ իր հպատակները բաժնող եւ իրեն դէմ հանող ձեռնարկ:

1700ին Օրիի եւ Մինաս Վարդապետի Հռոմ հասնիլը կը հաստատուի նաեւ ուրիշ աղբիւրներէ (Ստեփանոս Ռոշքայէ): Ռոշքա կը հաստատէ թէ Օրի ունէր

ուրիշ թուղթեր ալ, մատուցանելիք Լէոբոլտ կայսեր, Պալատինեան կայսրընտիրին եւ Մոսկուայի Զարին։ Եւ Պապէն յանձնարարուած՝ կ'երթայ կայսրընտիրին եւ Զարին։

Արտաքին աղբիւր մը (Ֆիտէ) կը հաստատէ թէ 26 Յունիս 1700ին Պապը ունկնդրութիւն մը տուած է Օրիին եւ Մինաս Վրդ.ին աջակցութիւն խոստացած է կայսրընտիրին մտադրութեանց, առանց շօշափելի հաւաստիացումի։ Այն ատեն Պապը, շահագրգռուած էր ոչ թէ Պարսկաստանի այլ Թուրքիոյ դէմ համադաշնակցութեամբ (Հռոմ, Վենետիկ, Գերմանիա, Լեհաստան, Ռուսիա) եւ այս ուղղութեամբ Պարսկաստանի հետ բանակցութիւններ կը վարէր։ Իր խոստումները սուտ էին, ինչպէս միշտ։

Օրի, Պապէն 1700ին նամակ մը կը ստանայ Պարսկաստանի կաթոլիկներուն ինպաստ միջամտելու համար։

Օրի այս անգամ անցաւ Վիեննա, ուր էր այդ պահուն Պալատինեան կայսրընտիրը։

9 Փետրուար 1701 թուականով կը պատասխանէ Աւստրիոյ կայսրը հայ պատուիրակներու դիմումին եւ կը յայտնէ մելիքներուն որ ինքն ունկնդրութիւն շնորհած է իրենց ներկայացուցիչներուն եւ վստահեցուցած է իր սիրալիր տրամադրութիւնը։ Նոյն թուականով կայսրը նամակ մը տուած է նաեւ ուղղուած Մեծն Պետրոս Զարին, որ կը յանձնարարէ Օրին։

Աստրիոյ կայսեր սիրալիր տրամադրութիւնը կեղծիք էր, վասնզի իր ձեռքը կապուած էր 1699ի Գառլովիցի դաշնագրով, որ Թուրքիոյ հետ կնքուած էր։

Իսկ զօրքը Հայաստան ղրկելու առաջարկը մերժած է բացարձակ, եւ ընդհակառակ Մոսկուայի դէմ թուրքերը զօրացնելու աշխատանքներ կատարած են, սակայն առանց արդիւնքի, վասնզի ծագած էր Սպանիոյ ժառանգութեան համար պատերազմը, որուն մէջ Ֆրանսա յաղթած էր։

Հետեւաբար յոյս չկար ոչ Ֆրանսայէն ոչ ալ Աւստրիայէն։ Կը մնար միայն Ռուսիա, որուն դիմել կ'որոշէ Օրի։

Ասիկա նոր ճամբայ մըն էր, որ Օրի կը բանար հայոց առջեւ։

* * *

1701ին Ապրիլին Օրի եւ Մինաս Վրդ.ը հասան Վարշավիա։ Նոյն տարին, Յուլիսին Օրի եւ իր ուղեկիցները՝ ընդամէնը վեց հոգի (մէջը ըլլալով իրենց թարգմանն ու երկու քարտուղարները) հասան Մոսկուա եւ ընդունուեցան իբր դիւանագիտական մարմին, կայսրընտիրին մէկ թուղթն ալ ներկայացուցին։ Ան ներկայացաւ Գանցելար (վարչապետ) Գոլովինի եւ յայտնեց թէ եկած էր Մոսկուա Հայաստանի ազատագրութեան նպատակին համար սոսկ գերմանական ուժեր տրամադրելու համար Զարին եւ խնդրելու, որ ան ձեռք առնէ սոյն նպատակի

իրագործման նախաձեռնութիւնը։

Տուաւ նախ գրաւոր բացատրագիր մը, ուր դարձեալ սուտեր կը վխտան եւ յայտարարուած են իրողութիւններ, արդարացնելու համար իր ուղղութեան փոփոխութիւնը։ Ինք կ'ուզէ այնպիսի ձեւ մը տալ, որ իբր թէ նախապէս որոշած է Զարին դիմել ու անկէ մերժուելու պարագային՝ Հռոմէական կայսեր։

Այս բացատրութիւններէն ետք Օրի, հարկ տեսաւ վերստին խմբագրել իր նախկին ծրագիրը եւ Հայաստանի արշաւանքին նախաձեռնութիւնը պահել Զարին, ըսելով թէ հայերը հնազանդ են։ Այս գիրին մէջ իրեն ալ վերապահուած էր ազատագրուած ապագայ Հայաստանի պետի դերը։

Վարչապետը շարք մը հարցեր ներկայացուց պատուիրակութեան, ուր կը հարցուէր թէ ո՞վ պիտի ըլլար Հայաստանի տէրը։ Օրի պատասխան տուաւ կայսեր եւ իր վարչապետի փափաքին համաձայն Հայաստանը կուտար Զարին։ Օրի կ'ուրանար նախկին ծրագիրը, կայսրընտիրին վերապահած դերը։

Զարը ծանօթանալէ ետք Օրիի զեկուցագրին, 1701 Հոկտեմբեր 7ին Գոլովինի տան մէջ ունկնդրեց Օրին եւ Մինաս Վրդ.ը, եւ յայտնեց թէ ինք տրամադիր է նկատի առնելու իրենց առաջարկը, Շուէտական պատերազմէն ետք։ Բայց մինչ այդ նաւաշինութիւններով պատրաստուեցաւ արշաւանքին։

1704ին կը տեսնուի Վրաց թագաւորին մէկ գրութենէն որ Մեծն Պետրոս յատուկ մարդ ղրկած է Կովկաս, ռուսական ապագայ արշաւին ռազմաբեմը հետախուզելու համար, եւ այդ մարդը իր պաշտօնը կատարելով դարձեր է։ Օրի ալ նոյնը կը հաստատէ։

Այս մարդը որ Հայաստան գացած է Մետոնն էր, որուն Օրի ալ յանձնարարութիւններ ունէր, թէեւ ինքն կ'ուրանար այդ բանը։ Իրականին մէջ ան չէր յաջողած համոզելու հայերը, որ համաձայնին Օրիի ծրագիրին։ Մետոն ձախողած էր Էջմիածնի մէջ։

Նահապետ Կաթողիկոսի աթոռականը Մինաս Վրդ. «վասն երկիւղի զգաւնաց» կ'ըսէր թէ բացայայտ չեն կրնար արտայայտուիլ եւ իրենց պատասխանը հաւատարիմ մարդով մը կը ղրկեն։

Այս թուղթերը կասկածելի նկատուած են, Մետոն Վասիլիէֆի ձախողութենէն ետք հնարուած կարկտան, որ սուտի վրայ հիմնուած էր նորէն։

Իրողութիւնն այն էր որ Ռուսիոյ գիրկը իյնալու հակառակորդներ կային հայոց մէջ։

Օրի չէր կրնար ընկրկիլ եւ ասոր համար խարդախեց թուղթերը «բարի նպատակով» հետեւաբար ըստ ոմանց ներելի, նոյնպէս «բարի նպատակով» ծածկուած էին գերման կայսեր եղած դիմումները, որ Ռուսիոյ վրայ գէշ պիտի ազդէին։

* * *

Օրի յաջողեցաւ Ռուսիոյ Զարէն գնդապետի աստիճան ստանալ ու առաքելութեամբ մը Պարսկաստան երթալ, տեղեկութիւններ հաւաքելու համար։

1704ին Մայիսին Զարի յանձնարարական նամակով Օրի եկաւ Վիեննա։ Ան հետը ունէր երկու նամակներ, մէկը Լէոբոլտ կայսեր եւ միւսը՝ կայսրընտիրին։

Այս միջոցին յարմար նկատուեցաւ Պապին յանձնարարականովը Օրին ղրկել Պարսկաստան, իբր պապական դեսպան։

Այս միջոցին մեռաւ Լէոբոլտ կայսրը, եւ Օրի կայսրընտիրին քով գնաց։

Օրի ինկած է խոշոր պարտքերու տակ եւ հալածուած պարտապահանջներէն, որոնցմէ մէկը, Թոխշալին՝ իրմէ ձիեր գնած կայսրընտիրին տալու համար։ Այս վերջինը հակառակ էր նաեւ Օրիին ուղղութեան, այսինքն Ռուսիոյ կողմ հակելուն դէմ էր, ուստի կը չարախօսէ կայսրընտիրին նամակներով։ Կայսրընտիրը կը հաւաստէր Օրիի թէ ինք հաւատք չէր ընծայեր Թոխշալիի ըսածներուն։

Մելիքներու անունով կեղծ գիր մըն ալ անոր տուած է։

Սակայն հակառակ Մինաս Վրդ.ի ջանքերուն՝ Թոխշալի մինչեւ Մոսկուա հետապնդեց Օրին, բաւական խոշոր գայթակղութեան մը տեղի տալով, երեւան հանելով չարաշահումներ եւ խաբեբայութիւններ, որոնց կը տեղեկանայ նաեւ Ստեփանոս Ռոշքա։

Օրի, ճարտար պաշտպանողականով մը ինքզինքը արդարացուց կայսրընտիրին առջեւ, նոյնիսկ օժանդակութիւն ստացաւ եւ աջակցութիւնը՝ յառաջիկայ ճամբորդութեան համար։

* * *

Օրի, վերջապէս յաջողեցաւ իբր ձարական գնդապետի պապական բանագնաց 1706ին վերադառնալ Մոսկուա։ Մոսկուայէն զէնքի եւ հանդերձանքի խոշոր գնումներ ըրած է, չենք գիտեր ուրկէ ճարելով գումարը։

Զարը Օրիին տուաւ նաեւ յանձնարարական, որպէսզի յարգուի ան իր խնդրանքներուն համար։ Զարը կ'ուզէր Օրիի հեղինակութիւնը բարձրացնել հայերու մօտ։

1707 Յուլիսին, Օրի 50 անձերու շքախումբով մը եւ 12 թնդանօթով գնաց Շամախի, ուր հասաւ 5 Փետրուար 1708ին։

Վերջապէս արտօնուեցաւ երթալու Սպահան, ուր գտած ընդունելութիւնը նկարագրուած է Յիսուեան Կրուշինսկիի (1675-1756) յիշատակներ[ուն մէջ]։ Կրուշինսկի, Օրին ճանչցած է շատ մօտէն, եւ իր յիշատակներուն մէջ – մէկէ աւելի տպագրութիւններու արժանացած եւ ուրիշ լեզուներու թարգմանուած – շահեկան լուսաբանութիւններ կան։ Ան, Օրին կը ներկայացնէ Ղափան ծնած հայ մը։ Յետոյ ապրած Իտալիա, Ֆրանսա, եւ Գերմանիա, եւ կը պատմէ անոր ծանօթութիւնը Լէոբոլտ կայսեր նախարարներու մօտ։ Կ. Պոլիս ղրկուած է

տեղեկութիւններ բերելու համար։ Զարէն ստացած գնդապետի աստիճանով կրկին գացած է Կ. Պոլիս եւ համաձայնեցուցած է Ռուսաստանը եւ Թուրքիան։ Այս յաջողութեան վարձատրութիւնը եղած էր իր Պարսկական առաքումը որպէսզի արտօնութիւն ձեռք բերէ, առանց մաքսի ապրանք ներածելու համար։

Այս առաջարկը Զարէն ընդունուելէ ետք, Օրի ուղեւորուեցաւ Վիեննա եւ Հռոմ, կայսրէն եւ Պապէն ալ յանձնարարութիւններ ձեռք բերելու համար։

Կղեմէս ԺԱ. Պապէն ալ առաւ յանձնարարական, հաւաստիացնելով թէ հայերը կաթոլիկ պիտի դարձնէ։

Յիսուսեաններէն ալ կ'առնէ յանձնարարութիւններ։ Օրիի դարձի ծախքերը կը հոգան հայ վաճառականներ։

Հոս ալ ակներեւ սուտեր կան, եւ մասնաւորապէս Թուրքիոյ մէջ իր ունեցած դիւանագիտական պաշտօններու մասին, որ կամ հաւատացուցած է եւ կամ հեղինակը իբր բարեացակամ հաւատալ ձեւացուցած է։

* * *

Պարսիկները կասկածով վերաբերած են Օրիի նկատմամբ, նկատելով զայն լրտեսող։ Ուզած են վարկաբեկել, իր յանձնարարականները սուտ կամ կեղծ ներկայացնելով։ Իր հակառակորդներու բանսարկութիւններն ալ դեր կատարեցին։ Պարսիկները «վտանգաւոր դեսպան»ի մուտքը մերժելով բացարձակ թշնամանք ցոյց տուած պիտի ըլլային Զարին հանդէպ, ուստի Շահ Սուլթան Հիւսէյն յարմար դատեց փութացնել Օրիի ընդունելութիւնը, մտածելով որ աւելի երկար մնալ հարկադրելով Շամախի անոր առիթ կը տրուէր գործելու, եւ ապստամբական ծրագիրներ կազմելու։ Անոր համար պատւով ընդունուեցաւ եւ աճապարանքով ետ դարձաւ։

Էջմիածին այցելած եւ Աղեքսանդր կաթողիկոսին թելադրած է Հռոմ դիմել եւ պահանջել որ կաթոլիկ քարոզիչներ ընդունին իրեն քարոզչական գործունէութիւնը։

* * *

Օրի, Պարսկաստանէն դարձին մեռաւ 1711ին Աստրախան։ Հոս ալ տարակոյսներ կան։ Յանկարծամա՞հ թէ թունաւորուած, տարակուսելի է։ Կաթոլի՞կ թէ հայադաւան, աս ալ անորոշ կը մնայ, վասնզի ըսուած է թէ մերժած է հայ եպիսկոպոսին տուած հաղորդութիւնը։

Թաղուած է Աստրախանի հայ եկեղեցիին բակը, հայադաւան ծէսով։

* * *

Օրի, խորագէտ, բարեկիրթ եւ դիւանագէտի յարմարութեան մարդ մըն էր։ Կայսրընտիրը համակրած էր անոր անձնասիրութիւնը եւ խելքը, ճարպիկութիւնը եւ գործունէութիւնը, ասպետական բնաւորութեամբ կիրթ մարդ մը, ինչպէս Վրաց թագաւորը համակիր էր անոր նպատակներուն եւ կը յանձնարարէր որպէս հայ եւ վրացի ժողովուրդներու ազատագրման գործին ծառայող անկեղծ եւ հաւատարիմ բարեկամ։ Օրիի անձնական յաջողութիւնն անգամ մարդագէտ եւ սրատես Պետրոս Մեծի մօտ ապացոյց է, որ համոզիչ լեզու եւ նպատակայարմար վարւողութիւն ունէր։

Ընդունակ եւ պատրաստաբան, ան ունէր փորձ խօսողի ու ճարպիկ ներշնչողի յատկութիւններ։ Թէեւ տարակուսելի է անոր ուսումնական զարգացումը, բայց ակներեւ էր իր բազմակողմանի յատկութիւնները, աշխոյժ եւ գործնական միտք։ Լռակեաց էր՝ երբ անհրաժեշտ էր, պերճախօս՝ երբ պէտք էր։ Խօսքի ջերմութեամբ եւ դատումներու ճկունութեամբ կարող էր համոզել զանոնք որոնց գործակցութեան պէտք ունէր։

Օրին, իր ժամանակի դիւանագիտութեան համաձայն կարող էր չեղածը թելադրել որպէս եղած եւ ընդհակառակը՝ իրապէս եղածը վարագուրել որպէս չեղած։

## ԺԴ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ԶԱՆԳՈՒԱԾՆԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ

Իսրայէլ Օրիի մահէն ետք, հայ ազատագրական շարժումը չունեցաւ հեղինակաւոր վարիչ մը որ, ընդունակ ըլլար գործը վարելու, թէկուզ սխալ ուղղութեամբ։ Իսրայէլ Օրի, իր բոլոր սխալներով եւ այպանելի արարքներով, անուրանալի է որ նոր ուղղութեան մը առաջնորդը եղաւ։

Իրմով է որ կը սկսի Արեւմուտքի պետութիւններէն սպասուած խաբուսիկ ակնկալութիւններուն լքումը եւ հայոց Ռուսիոյ վրայ յուսադրութիւնը, որ սակայն նոյնպէս շատ դրական արդիւնք մը չի բերաւ հայոց, վասնզի ազատագրութիւնը չիրականացաւ։

Մեր ժամանակագիրները, հայ եւ ռուս քաղաքական յարաբերութիւններուն մասին իրարու ներհակ կարծիքներ ունին։ Ոմանք, աներկմիտ կը հաւատան Մեծն Պետրոսի անկեղծութեան եւ կ՚ընդունին թէ անիկա իրապէս տրամադիր էր օգնելու հայոց ազատագրութեան։

Իսկ ուրիշներ, Մեծն Պետրոսի կը վերագրեն կեղծիք եւ խաբէութիւն։

Իրապէս արդիւնքէն դատելով, այս վերջին տեսութիւնը արդարացնող երեւոյթներ կան։

Մեծն Պետրոսի բոլոր քայլերուն մէջ ոչ մէկ վճռական բան կայ։ Ընդհակառակը, գրգռութիւն ստեղծելէ ետք, հայերը լքուած են իրենց ճակատագրին՝ որեւէ պատրուակով եւ փոխանակ զինեալ միջամտութեան, ընդհակառակը, Հայաստանը հայերէ դատարկացնելու ծրագիրի մը առաջին սերմերը կը տեսնուին այդ թուականներուն, ուր ջանքեր կը տարուին հայերը դէպի Ռուսիոյ ներսերը փոխադրելու։

Եւ կատարուած մի քանի ձեռնարկներն ալ՝ հայոց եւ վրաց ի նպաստ ըլլալու նկարագիրը չունէին, այլ պարզապէս ռուսական շահերը կը հետապնդէին։

Օրինակի համար Մեծն Պետրոս 1715ին Պարսկաստան ղրկեց դեսպան մը, Արտէմի Վարինսկի, յատկապէս յանձնարարելով անոր որ մանրամասն ուսումնասիրէ Պարսկաստանի քաղաքական, տնտեսական եւ ռազմական վիճակները։

Մեծ Պետրոս դեսպանին կը յանձնարարէ նաեւ «տեղեկութիւններ հաւաքել հայ ժողովուրդին վրայ, ճշդել անոր թիւը եւ կեանքը... Սիրով եւ քաղցրութեամբ վարուիլ եւ բարեկամութիւն հաստատել հայոց հետ»։ Իրականին մէջ՝ կեղծիք էր, հայերը գործիք ընելու եւ օգտագործելու ձեռնարկ էր եղածը։

Արդարեւ Պետրոս Ա. Ցարը Հայաստանի ղրկեց նաեւ Մինաս Վրդ.ը,

պարզապէս իր դեսպանին օգնելու եւ անոր գործը դիւրացնելու համար, առանց իր կողմէն դրական օգուտ մը ընծայելու։

Մինաս Վրդ., ռուսական քաղաքականութեան գործիք՝ Հայաստան գնաց եւ նախ այցելեց Էջմիածին, ուր Աստուածատուր Համատանցին էր կաթողիկոսը (1715-1725)։ Անիկա վտանգաւոր նկատեց ձեռնարկը, եւ Մինաս Վրդ.ը չքաջալեբեց, մինչ Գանձասարի կաթողիկոս Եսայի Հասան Ջալալեանը, որ Իսրայէլ Օրիի գործը կը շարունակէր՝ գրկաբաց ընդունեց զայն եւ անոր արքեպիսկոպոսական աստիճան տուաւ ու համայն Ռուսիոյ առաջնորդ նշանակեց թէ «մեր նահանգին մելիքներով, մեծամեծներով մենք պատրաստ ենք, մեր կարողութեան չափով, ընդ առաջ գալ, երբ հզօր եւ մեծ թագաւորութիւնը փափաքի արշաւել դէպի այս կողմերը»։

Ռուս դեսպանը, իր քննութեան իբր հետեւանք կը նշէր թէ Պարսիկ պետութիւնը քայքայուած էր, եւ դէպի Պարսկաստան արշաւանք մը ընելու համար նպաստաւոր պայմաններ ստեղծուած էին։ Պարսկաստան ղրկուած Վալինսկին նշանակուեցաւ Աստրախանի նահանգապետ եւ հրաման ստացաւ նաւատորմիղ կազմելու եւ ռազմական պաշարներ մթերելու։ Շուէտի յաղթելէ ետք (1721), մեծն Պետրոս պատրաստուեցաւ Պարսկաստան արշաւանքի մը, առանց երբեք որեւէ յանձնառութիւն եւ խոստում տալու հայոց։ Ան կ'ուզէր տիրանալ Կասպից Ծովուն ափերուն եւ կարեւոր առեւտրական ուղիներուն, ինչպէս նաեւ կանխել թրքական յարձակողական ծրագիրները։

Արդարեւ Թուրքիա մեծն Պետրոսի դէմ Բրուտի յաղթանակը շահելէ եւ Ազովը վերագրաւելէ ետք, իր դարաւոր թշնամին՝ Պարսկաստանը բոլորովին քայքայելու համար աշխատեցաւ գրգռել Պարսկաստանի մէջ ապստամբութիւններ։ Այսպէս ապստամբեցան Աֆղանները եւ Տաղստանցիք։ Լեզգիները տակնուվրայ ըրին Պարսկաստանը եւ մասնաւորապէս Պարսկա-Հայաստանը, բացի Արարատեան Դաշտէն։ Բայց 1711ին, Պայազիտ Փաշան եւ 1713ին քիւրտ ցեղապետներ ասպատակեցին նաեւ հոն եւ մեծ աւերումներ կատարեցին։

Թուրքիա կը զգար թէ Ռուսիոյ յառաջացումը վտանգ կը սպառնար իրեն, եւ կ'ուզէր կանխել աղէտը։ Պէտք չէ մոռնալ թէ Արեւմտեան Եւրոպայի պետութիւնները, ինչպէս Անգլիա եւ Ֆրանսա նոյնքան կը վախնային Ռուսիոյ հանդէպ դէպի Հայաստան եւ Պարսից Ծոց իջնալէն եւ կը գրգռէին թուրքերը ընդդէմ Ռուսիոյ։

1719-1722ին լեռնականներու աւերները սարսափելի դարձան։ Անոնք 3-4 տարի անընդհատ տակնուվրայ ըրին Անդրկովկասը, մանաւանդ Լոռին ու Շիրվանը, բայց դիմադրութեան հանդիպեցան Ղարաբաղի մեծ մասին մէջ, ուր հայերը ինքնապաշտպանութեան դիմեցին։

Առաջին անգամ էր որ հայ ազատագրութեան գործը կը գտնէր իր բնական ուղին, հեռաւոր երկիրներէ օգնութիւն ակնկալելու տեղ՝ ինքն իրեն վստահելով

ուղիղ ճամբուն մէջ կը մտնէր: Հայերը, որ Պարսկաստանի ամենէն անպաշտպան եւ ամենէն աննպաստ պայմաններու մէջ գտնուող ժողովուրդն էր, միայն Ղարաբաղի ու քիչ մըն ալ Սիւնիքի մէջ, երկրին բնական դիրքէն եւ իրենց խիտ բնակչութենէն օգտուելով՝ ունէին քիչ մը ապահովութիւն, եւ պզտիկ ստուերներ իշխանութիւններու, որոնց պետերը Մելիք կը կոչուէին: Ասոնց միակ առաւելութիւնը այն էր որ ունէին զինուորական ուժ, իրենց ձեռքին տակ, հետեւաբար, իշխանութեան մը կամ պետութեան մը կորիզը հոն գոյութիւն ունէր եւ ատոր համար էր որ Օրի անոնց վրայ յոյսեր դրած էր:

Հոն ամրանալու ձգտում մը կը տեսնուէր նոյնիսկ ԺԸ. դարու սկիզբէն: Այսպէս 1708-11 թուականներուն, Շիրվանի խանութիւնէն, իր ընտանիքով եւ զինուորական ուժերով Ղարաբաղ կը փոխադրուի հերոսական անուն շահած Աւան Իւզպաշի (հարիւրապետ) որուն ծնողքները, իրենց գիւղացիներով սիւնեցիներ էին, եւ ուր ան զինուորական ծառայութիւններ կատարած էր: Աւան երբ դարձաւ Սիւնիք, ամրացաւ Ղարաբաղի Վարանդ գաւառի լեռներուն եւ ձորերուն մէջ:

Այդ օրերէն սկսաւ գոյութիւն ունենալ ռազմական ճամբայ մը, (բնակատեղի) Շօշ կամ Շուշի գիւղին մէջ, նախապէս՝ լեռնական ապստամբութիւններու դէմ պաշտպանուելու համար: Այս բանակատեղին կամ զինուորական կայանը կոչուեցաւ սղնախ, որ կը նշանակէ «ամուր ապաստան»:

1713ին, նոյն նպատակով եւ հիւսիսային Արցախի Կիւլստան եւ Ջրաբերդ գաւառները ինքզինքնին անկախ յայտարարելով դրացի Գանձակի խանութենէն՝ կազմեցին երկրորդ եւ երրորդ սղնախ որոնք 10-12 հազար ռազմիկներու ուժ մը կը ներկայացնէին, 1721-22 կազմուեցան նաեւ երեք սղնախ, Խաչենի, Գանձասարի եւ Դիզակի մէջ:

Այս սղնախներու մէջ չկար ամուր միութիւն, բայց պէտք եղած ատեն կը գործակցէին իրարու հետ: Մինչեւ 1724 թուականին իրական ղեկավարն կամ ընդհանուր հրամանատարը Եսայի Հասան Ջալալեան կաթողիկոսն էր, իսկ անկէ ետքը՝ Աւան Խաշպապեան, առաջին կամ մեծ սղնախի հիմնողը:

Այսպէս Կովկասի ստորոտը իրական ուժ մը գոյացնելու յաջողեցան, երբ անդին Պարսկաստանը կը գրաւուէր աֆղան ապստամբներէ, որոնք իրենց եռապատիկ թիւ ունեցող պարսիկ բանակը կը ջարդէին: Շահը գերի ինկաւ, իր որդին՝ Թահմազ փախաւ առանց բանակի եւ ինքզինքը հռչակեց Շահ:

Սպահանի անկումով, Իրանի հիւսիսային մասերու մէջ բնակող կովկասեան ժողովուրդներու համար ստեղծուեցաւ ազատագրութեան նպաստաւոր առիթը: Առաջին օգտուողը եղաւ Վրաստան, որուն Վախտանգ Դ. թագաւորը, որ 1719ին ապստամբութեան պատրաստութիւն տեսաւ եւ յաջորդ տարին սկսաւ բանակցիլ Մեծն Պետրոսի հետ, որ խոստացաւ օգնել:

Վախտանգի քաջ յայտնի էին հայերու ապստամբելու տրամադրութիւնները, ուստի կապեր հաստատեց հայ մելիքներու հետ եւ սկսաւ կազմակերպել երկրին

զինուորական ուժերը, զէնքի կոչելով Վրաստանի մայրաքաղաքի եւ գիւղերու բնակիչները:

1721ին, տաղստանցիք, մտնելով Ատրպէյճան, պաշարեցին նաեւ Գանձակը, որ Վախտանգէն օգնութիւն խնդրեց: Վրաստանի թագաւորը մեծ բանակով օգնութեան հասաւ դիմադրող քաղաքէն եւ լեզգիները հեռացան: Գանձակի ատրպէյճանցիք եւս միացան ազատագրական այս շարժման:

Ղարաբաղի վարիչները Եսայի Հասան Ջալալեան Կաթ.ի գլխաւորութեամբ, Գանձակի մէջ ընդառաջ գացին Վախտանգին, ու անոր հետ Թիֆլիս գացին ապստամբութեան ծրագիր մշակելու ու դաշինք կնքելու համար:

Մեծն Պետրոսի յուսադրական նամակներէն ոգեւորուած, որոշեցին նոր զօրամասեր կազմակերպել հայկական գաւառներու մէջ եւ Վրաստանէն հայ զինուորականներ ղրկել Սիւնիք, մինչ 1722ին ռուսական 77.000նոց բանակ մը, նոյնիսկ Պետրոս Մեծի հրամանատարութեամբ, ցամաքի եւ Կասպից Ծովու ճամբով կը քալէր դէպի հարաւ, Շամախի գրաւման եւ աւառարութեան պատճառով, վասնզի տաղստանցիք չէին խնայած նաեւ ռուս վաճառականներուն:

Ցարը նամակով մը հրաւիրեց Վախտանգը որպէսզի ան ալ իր բանակներով Շամախի վրայ յարձակող ռուս բանակներուն միանայ:

Իսկ հայոցմէ Իսրայէլ Օրիի օգնական Մինաս Վրդ. եւ մի քանի հայ սպաներ կը գործակցին ռուսական բանակին: Առանց դիմադրութեան հանդիպելու, Օգոստոսին, ռուս բանակները մտան Դերբենդի բերդը: Սակայն հազիւ շաբաթ մը անցած՝ Մեծն Պետրոս արշաւանքը դադրեցուց եւ նահանջի պատրաստուելու հրաման տուաւ, պահպանելով Դերբենդը ու հետագային գրաւելով Պաքուն, Էնզէլին եւ Րէշտ քաղաքները:

Այս դժբախտ որոշումը՝ ռուս օգնութեան սպասող վրացիներուն եւ հայերուն համար կը պատճառաբանեն եւ կ'արդարացնեն հայ ռուսասէր պատմիչներ կարգ մը պատճառներ ցոյց տալով, որոնք բնաւ համոզիչ չեն, այնպէս որ հայերը եւ վրացիք հաւասարապէս յուսախաբ ըլլալու իրաւունք ունէին ռուսերէն, ինչպէս անցեալին մէջ եղած էին Արեւմտեան Եւրոպայի պետութիւններէն:

Խեղճ վրացիք եւ հայերը, ռուսական յառաջխաղացութիւնը տեսնելով եւ վստահելով Ցարին խօսքին իրենք ալ յայտնապէս սկսած էին գործի: Վախտանգ մեծ ուժով յառաջացաւ դէպի Գանձակ, որուն մահմետական բնակչութեան ալ պարտաւորած էր: Եսայի Հասան Ջալալեան Կաթողիկոս, որ Վրաստանէն կ'ուղեկցէր Վախտանգի, ըստ համաձայնութեան ացնաւ Ղարաբաղ եւ հիւսիսային սղնախներուն ուժերէն 12.000 զինուորներու գլուխը անցած, անոնց հրամանատարներուն հետ, փութաց միանալ վրացական զօրքերուն: Ղարաբաղի ղեկավարները որոշեր էին ազատագրել նաեւ Արարատեան Դաշտը եւ Երեւան քաղաքը:

Հայ վրացի միացեալ բանակը երկու ամիս մնաց Գանձակի մէջ, սպասելով

Պետրոս Ա.ի հրահանգներուն, որոնք ոչ միայն չեկան, այլ ընդհակառակը՝ հասաւ անսպասելի հրաման մը, բանակը ետ քաշելու, հայերը եւ վրացիները ձգելով պարսկական բանակին դէմ, առանց ռուսական որեւէ աջակցութեան։

Այս նոր կացութեան առջեւ երկու կողմի զօրամասերը դարձան իրենց նախկին տեղերը, մնալով զէնքի տակ, առանց ցրուելու։

Բայց գրգռութիւնը ստեղծուած էր, ու անկարելի էր որ զինեալ ուժերը մնային հանդարտ։ Այսպէս որ 1723-24ին Ղարաբաղի սղնախները յաճախ կռիւներ կը մղէին իրենց վրայ յարձակող տաղստանցիներուն եւ պարսկական զօրքերուն եւ տեղական ուժերուն դէմ։

Դիզակի սղնախը պարսիկ բանակին դէմ երկու մեծ կռիւներ մղեց, որոնց օգնեցին մելիքներ եւ դրացի ատրպէյճանցիք, որոնք նոյնպէս անկախութեան կը ձգտէին։

Ռուսական արշաւանքի լուրը եւ Վրաստանի ու Ղարաբաղի ռազմական դաշինքը ոգեւորութիւն յառաջ բերին նաեւ Սիւնիքի մէջ։ Ժողովուրդը իր ճակատագիրը ինքն կ'որոշէր ապստամբելով։ Նոյնիսկ տեղացի առեւտրականներ ալ խառնուեցան այս շարժման, եւ տեղացի նշանաւոր վաճառական Ստ. Շահումեան ուղղուեցաւ Վրաստան, օգնութիւն ստանալու համար։ Կազմել տուաւ հանրագրութիւն մը Վախտանգի ուղղուած եւ ստորագրուած յիսուն գիւղական տանուտէրներէ։

Առաջին անգամ էր որ հայ ժողովուրդը ինք ինքնակամ ձեռք կ'առնէր իր ճակատագիրը վարելու գործը։

Այն ատեն, վրացական բանակին մէջ ուշագրաւ դէմք մը դարձած էր հայ զինուորական մը՝ Դաւիթ անունով։ Աւանդութեան մը համաձայն, անիկա Կապանէն Վրաստան գաղթած մելիքներէն մէկուն որդին էր, որ վրացական բանակին մէջ նշանաւոր եղած է։

Ստ. Շահումեանի դիմումին վրայ որոշուեցաւ Դաւիթը մի քանի հայ զինուորականներու հետ ղրկել Սիւնիք, ապստամբութիւնը ղեկավարելու համար։

1722ին Մցխեթայէն Ղարաբաղի ճամբով Դաւիթ ճամբորդեց Սիւնիք իր հետ ունենալով 40 վարժ հայ զինուորականներ։ Կարճ ժամանակի մէջ նոր հրամանատարին շուրջը համախմբուեցան 400 հոգի եւ սկսաւ ապստամբութիւնը։ Շատ դժուարութիւններ կային Դաւիթ Բէկի առաջ, սակայն պէտք էր կազմակերպել տեղական ուժերը։ Սիսիանի եւ Կապանի բերդերէն վտարել պարսկական պահակազօրքերը։

Ուժեղ դիմադրութիւն ցոյց տուին Տաթեւի դաւանափոխ մելիք Դաւիթը եւ Սիսիանի Որոտան բերդի պարսիկ պահակազօրը։

Դաւիթ Բէկ եւ Սիւնիքի հրամանատարները օգնութիւն խնդրեցին Ղարաբաղէն։ Աւան Իւզպաշին, մի քանի հազար զինուորներով անցաւ Սիւնիք եւ ապահովեց յաղթանակը։

Դաւիթ Բէկ ամրացաւ Տաթեւ։ Անոր զօրքը բազմացաւ կարճ ժամանակի մէջ, հասնելով 6-7000 հոգիի։ Յամառ գրոհներով գրաւուեցան Որոտան բերդը, ազատագրուեցաւ Սիսիանը, բուն Զանգեզուրը (Գորիս) եւ հարեւան Քաշաթաղը։

Ասկէ յետոյ սկսաւ Կապանի, Մեղրիի եւ Գողթանի ազատագրութիւնը, նոյնպէս կարելի եղաւ նշանաւոր Զեւա բերդը գրաւել։

Դաւիթ Բէկ ցոյց տուաւ հմուտ ղեկավարի եւ զօրավարի կարողութիւն, եւ միեւնոյն ատեն քաղաքական ճկունութիւն։ Հզօր ձեռքով մը վարեց երկիրը, ցոյց տալով կառավարող կարողութիւն։

Անոր գլխաւոր զինակիցներն ու գործակիցներն էին Մխիթար սպարապետը, Թորոսը, Տէր Աւետիսը, Շահումեանը, Բայանդուրը, Աւթանդիլը եւայլն։

Դաւիթ Բէկ իր տիրապետած հողամասին մէջ 1722ին դրաւ հիմը հայկական իշխանութեան մը, որ կը յենուր ազգային ուժին եւ հայ զօրքերուն վրայ, ինչպէս Եսայի Հասան Ջալալեան կը հաստատէ իր պատմական գրքոյկին մէջ, իբր ականատես եւ մասնակից այդ դէպքերուն։

Դաւիթ Բէկի իշխանութիւնը կը տարածուէր Մռաւ լերան հիւսիսային լանջէն մինչեւ Արաքսի ափերը, ընդգրկելով պատմական Արցախ եւ Սիւնիք Նահանգները։

Միայն այդ երկու նախանգներուն մէջ ապստամբ հայերը ունէին 60.000 կռուող մարդ, որուն 40.000ը՝ Ղարաբաղ կը գտնուէր եւ 20.000ը՝ Սիւնիք, սակայն այդ բանակին հազիւ մէկ երրորդը զինուած էր նախնական հրազէններով, մէկ երրորդը՝ նիզակի, թուրի պէս զէնքերով, իսկ մնացեալը զինուած էր այն ամէնով որ կրցած էր ձեռք բերել։ Այս զէնքերը, մեծ մասամբ, պատրաստուած էին տեղւոյն վարպետ զինագործներու ձեռքով։

* * *

Երբեք Դաւիթ Բէկի իշխանութեան հիմնումը վերջ չդրաւ հայ եւ վրացի վարիչներու բանակցութիւններուն Մեծն Պետրոսի հետ, վասնզի Դաւիթի ուժերը անբաւական կը նկատէին դիմադրելու համար պարսիկ եւ թուրք բանակներու յարձակումներուն։

Արդարեւ անկարելի էր թուրք եւ պարսիկ պետութիւնները – թէեւ հակառակ իրարու – իբրեւ իսլամ պետութիւններ չէին կրնար հանդուրժել քրիստոնեաներու զօրացումը։

Ասոր համար, օգտուելով Չարին կովկասեան շրջանէն քաշուիլը, 1723ին թուրքերը դէպի Վրաստան արշաւեցին եւ գրաւեցին մայրաքաղաքը՝ Թիֆլիսը։ Լոռի բերդաքաղաքը թուրք բանակին զօրաւոր դիմադրութիւն ցոյց տուաւ եւ բնաւ անձնատուր չեղաւ։

Ռուս բանակը, փոխանակ թուրք բանակին առաջխաղացը կասեցնելու,

Կասպից Ծովու եզերքը գրաւելով զբաղեցաւ եւ 1723ի ամառը գրաւեց Պաքու եւ Մազանդարանի կողմերը։ Միամիտ հայերը Ղարաբաղի եւ Սիւնիքի մէջ սրտապնդուեցան, ռուս բանակի շարժումը ի նպաստ հայոց օգնութիւն մը մեկնելով։

Հետեւաբար Վախտանգ եւ հայ գործիչները անընդհատ դիմումներ կը կատարէին Զարին որ փութայ օգնութեան։ Զարը չէր դադրեր յուսադրելէ հայերը եւ իր գրաւման գործը դիւրացնելու համար յուսադրող նամակներ կը ղրկէր հայոց եւ վրացիներուն, որ ամուր պահեն իրենց նուաճած դիրքերը եւ չյուսահատին։

Սակայն պարզ խաբէութիւն մը ունէր եղածը, վասնզի բնաւ ռուս բանակը օգնութեան չհասաւ եւ թոյլ տուաւ որ աշնան թրքական բանակը Թիֆլիսէն յառաջանայ Գանձակ։ Թուրքերը հոս հանդիպեցան տեղացի իսլամներու եւ հայերու միացեալ ուժերով հերոսական եւ երկարատեւ դիմադրութեան եւ ստիպուած եղան նահանջելու՝ մօտ 2000 զոհ տալէ ետք։

Երեւանի ճամբուն վրայ թուրք բանակի առաջապահները հանդիպեցան Կողբ գիւղաքաղաքի դիմադրութեան։

Երբ թուրք բանակը հասաւ Երեւան, ուր նախ պարսիկ խաները, հայոց դիմադրութեան օգնեցին եւ տուին 2000 զոհ։

Հայերը դիւցազնաբար կռուեցան, հայ ազատագրական գաղափարներով խանդավառուած։ Անոնց թոյլ չտուին որ Օսմանեան բանակը յարձակի Դաւիթ Բէկի իշխանապետութեան վրայ։ Սակայն հայոց զէնքերը անսպառ չէին, եւ հետզհետէ հասնող թուրք զօրքերու ուժին առջեւ չդիմանալով 15 հազար զոհ տալով, Երեւան ինկաւ թուրքերու ձեռքը։

Այս պատերազմներու ատեն եւրոպացիք (մանաւանդ Անգլիա) թուրք բանակը զօրացնելու հետամուտ էին եւ կը քաջալերէին թուրքերը որ տեղի չտան։

Յայտնի չէ թէ որքան անկեղծութեամբ կ'ըսուի թէ Ռուսիա օգտուելով նպաստաւոր կացութենէ եւ խուսափելու համար պատերազմէն, առաջարկած է Արեւելեան Վրաստանը եւ Արեւելեան Հայաստանը ճանչնալ որպէս չէզոք երկիրներ, որպէսզի ոչ Թուրքիա եւ ոչ Ռուսիա բանակներ չմտցնեն հոն։ Սակայն թուրքերը մերժեցին այս առաջարկը։ Ռուսիա հաւանօրէն անկեղծ չէր եւ կ'ուզէր իր շահերուն համար ծառայեցնել հայերը, ուստի կը յորդորէր հայերը եւ վրացիները որ միացեալ ճակատ ստեղծեն եւ դիմադրեն մինչեւ որ հասնի օգնութեան հասնելու յարմար առիթը։

Զարը, իր այս ծրագիրը յաջողցնելու համար Ղարաբաղ ղրկեց Ջուղայեցի հայ վաճառական եւ քաղաքական գործիչ Իվան Կարապետը իբր Զարին պատուիրակ։ Իվան Կարապետ 1723ին Ղարաբաղի ղեկավարներու եւ ընդհանրապէս հայերու ուղղուած Պետրոս Ա.ի հրովարտակ մը ունէր հետը, ուր Զարը կը խոստանար հայերուն արտօնութիւն Ռուսաստան եւ Կասպից Ծով

հաստատուելու եւ տնտեսական գործունէութեան լայն ազատութիւն, ինչ որ իշահ Ռուսիոյ էր եւ ոչ թէ հայոց։ Ասկէ վերջն էր որ ռուս բանակը պիտի գրաւէր եւ հայերը ազատագրէր։ Իսկ եթէ հայերը չէին կրնար տոկալ՝ կրնային ռուսերու մօտ ապաստանիլ։ Պատուէր կը տրուէր հանդարտ մնալ։ Յուսադրելու համար հայերը գրուած էր որ իրեն հրաման տրուած էր որ իրագործուի հայոց ազգային խնդիրը։

Իվան Կարապետ այս գիրերով զօրացած մի քանի ամսուան մէջ յաջողեցաւ միացեալ ճակատ ստեղծել Ղարաբաղի իշխաններու եւ Սիւնիքի բոլոր ուժերու միջեւ, եւ ընդհանուր հրամանատարութիւնը յանձնեց Աւան Իւզպաշիին։

Ան աշխատեցաւ համաձայնեցնել նաեւ ատրպէյճանցիները եւ յաջողեցաւ։

Իվան Կարապետ առաւ երդմնագիրներ հայ եւ ատրպէյճանցի ղեկավարներէն Զարին հնազանդելու եւ հակառակորդներուն կը սպառնար։

Իվան բանակցեցաւ Վրաստանի, Երեւանի եւ Էջմիածնի ղեկավար շրջան-ներու հետ եւ չորս տարի եղաւ այդ շարժման գլխաւոր ղեկավարներէն մէկը։

Սակայն բոլոր անոնք ոչինչ կը բերէին ինչ որ հայ[երը] մի[ն]ակ դիմադրեցին – ինչպէս տեսանք – Երեւանի մէջ 1724ին եւ Ռուսիա առանց որեւէ բան ապահովելու հայոց, դաշինք ստորագրեց Թուրքիոյ հետ եւ ստացաւ Կասպից Ծովու հարաւ արեւմտեան եզերքները, իսկ Թուրքիոյ անցան Արեւելեան Վրաստանը եւ Արեւելեան Հայաստանը ու Ատրպէյճանի արեւմտեան եւ կեդրոնական մասերը։

Այս պայմանները ստորագրուեցան Երեւանի անկումէն հինգ օր ետքը, եւ Վախտանգ ստիպուեցաւ հեռանալ Վրաստանէն եւ ապաստանիլ Ռուսաստան։

Էջմիածնի Կաթողիկոսը յանդիմանուած էր [եւ] ստիպուեցաւ յատուկ կոնդակով սղնախները յորդորել որ խոհեմ ըլլան, չկռուին Օսմանեան բանակին դէմ եւ պատգամաւորներ ղրկեն բանակցելու համար։

Հիւսիսի եւ արեւելեան լեռնագաւառներու մէջ (Ղարաբաղ եւ Սիւնիք) ժողովուրդին հերոսական ջանքերով եւ արիւնով վերստեղծուած հայկական իշխանութիւնը որ պէտք էր կորիզը դառնար ազատագրեալ Հայաստանին, ռուսական անուղղամիտ խաղարկութեամբ առնուեցաւ աքցանի մէջ, առանց յոյս ունենալու խոստացուած օգնութեան յոյսին, քանի որ դաշինք մը կար։

Տագնապը ընդհանուր էր եւ վարանումի նշաններ տեսնուեցան հայերու մէջ, սակայն վերջապէս ընդհանուր համաձայնութիւն մը ստեղծուեցաւ դիմադրելու եւ կռուելու եւ թուրքերուն անձնատուր չըլլալու։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*, նախաբան՝ Հայկ Աւագեան (59 էջ)

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)* (40 էջ)

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան (61 էջ)

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը* (202 էջ)

2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (317 էջ)

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (201 էջ)

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (561 էջ)

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (546 էջ)

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (88 էջ)

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ (ծննդեան 135-ամեակին առիթով),* հաւաքեց՝ Հ. Աւագեան (73 էջ)

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (53 էջ)

2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը* (155 էջ)

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (497 էջ)

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (169 էջ)

Յաւելուած ԺԵ.
*2008 Մարտ 1-ը ըստ* Lragir.am*-ի, A1+-ի եւ Հետքի (10-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (625 էջ)

Յաւելուած ԺԶ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Ա. փուլ (13 – 23 Ապրիլ 2018)* (32 էջ)

Յաւելուած ԺԷ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Բ. փուլ (25 Ապրիլ – 1 Մայիս 2018)* (58 էջ)

Յաւելուած ԺԸ.
*Արմենակ Շահ-Մուրատեան. ժամանակագրութիւն, յօդուածներ, երգացանկ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (580 էջ)

Յաւելուած ԺԹ.
*Գոհարիկ Ղազարոսեան. ցանկ ստեղծագործութիւններու, սկաւառակագրութիւն*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (160 էջ)

Յաւելուած Ի.
Մարուշ Երամեան, *Ուրուանկար 1965-1995 թուականներու Սփիւռքահայ բանաստեղծութեան*, ներածութիւն՝ Հայկ Աւագեան, գնահատանքի խօսք՝ Արմենակ Եղիայեան (182 էջ)

2019

Յաւելուած ԻԱ.
*Քիրազ. ընտրանի եգիպտական շրջանի երգիծանկարներու*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (81 էջ)

Յաւելուած ԻԲ.
Հայկ Աւագեան, *Վահան Թէքէեանի յօդուածները* Արեւ *լրագիրին մէջ. հնարաւորութի՞ւն թէ դիմադրութիւն* (124 էջ)

Յաւելուած ԻԳ.
Հայկ Աւագեան, *Արամ Խաչատրեանի ընկալումը եգիպտական շրջանակներու մէջ. փոխուող յարացոյցներ* (250 էջ)

Յաւելուած ԻԴ.
Վարան Ոյժ, *Յակինթի պարտէզը* (բանաստեղծութիւն), նախաբան՝ Հ. Աւագեան (52 էջ)

Յաւելուած ԻԵ.
Եւգենեա Արիստակեան, *Յուշեր գաղութահայ կեանքից*, տեքստի կազմող, առաջաբանի եւ ծանօթագրութիւնների հեղինակ՝ Արծուի Բախչինեան, ներածութիւն՝ Հ. Աւագեան (264 էջ)

Յաւելուած ԻԶ.
Արշակ Ալպօյաճեան, *Պատմութիւն հայ ազատագրական շարժման. դասախօսութիւններու շարք*, հրատարակութեան պատրաստեց՝ Հայկ Աւագեան (101 էջ)